ԳԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

# ԱՆՏԱՌԻ ԴՍՏԵՐ ՀԵՔԻԱԹԸ



Ցածի խոնավ խճուղում դադարել էր ավտոմեքենաների երթևեկը։ Ծառերի ճյուղերի արանքից թարթում էին մոտակա գյուղի կրակները։ Փչում էր տաք քամի։ Ծառերի ճյուղերին տեղ-տեղ մնացել էին հալչող ձյան հյուսքեր, և լիալուսնի լույսի տակ անտառն ուներ հեքիաթային տեսք։

Փոքրիկ տնակի ներսում լամպը աղոտ լուսավորում էր շուրջը։ Վառարանը մարած էր։

Տղան վերմակի տակից հանեց գլուխը։ Սև մազերը իջած էին ճակատին, հոնքերը լայն էին, աչքերն՝ աննինջ։

— Հայրիկ, ի՞նչ է անում անտառի դիցուհին, երբ անտառում լինում է անդորր։

Հայրիկը բացեց փակվող աչքերը։

— Անդորր պահերին նա քաշվում է անտառի խորքը, ուր չեն կարող հասնել մարդիկ, և սպասում է։

— Ինչի՞ է սպասում,— հարցրեց տղան։

— Սպասում է փոթորկոտ գիշերի, որպեսզի նորից գա մարդկանց մոտ։

— Ինչու՞ է նա խուսափում մարդկանցից,— հարցրեց տղան։

— Որովհետև գիտե, որ կան չար մարդիկ։

— Բայց ինչու՛ է նա ուզում մոտ լինել մարդկանց։

Նկ. ՍՏԵԼԼԱ ԱՐԻՍՏԱԿԵՍՅԱՆԻ

ՀՈՒՆՎԱՐ
№ 1 1961 Թ.

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
32-ՐԴ ՏԱՐԻ




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

— Որովհետև սիրում է մարդկանց։ Քնի՛ր։

Հայրը շրջվեց դեպի պատը։ Տղան գլուխը դրեց բարձին, աչքերը փակեց։

«Նրա աչքերում բարի կրակներ կան։ Նրա աչքերը սև են։ Այդպես սև լինում է գարնանային գիշերվա երկինքը։ Նա հագած է կանաչ, ծաղկավոր շրջազգեստ։ Այդպես լինում է անտառը գարնանը»—հիշեց տղան հոր խոսքերը։

«Եթե հավատացնեմ նրան, որ ես վատ մարդ չեմ, նա երևի մեր տան մոտ կգա անտառի անդորր պահերին։ Պետք է միայն հավատացնել։ Դա դժվար չէ»—մտածեց տղան։ Ապա հիշեց, որ հայրն ասում է իրեն «Չար տղա»։ Նա ցանկացավ համոզվել՝ իսկապե՞ս ինքը չար է, թե հայրն այդ ասում է միայն բարկանալով։

Նա բացեց աչքերը։

— Հայրի՛կ։

Հայրը չպատասխանեց։

— Ես չա՞ր եմ, հայրիկ,—հարցրեց տղան։

— Խելոք ես։ Քնի՛ր,— մրմնջաց հայրը։

Տղային թվաց, թե անտառի դիցուհին հիմա էլ, անդորր, լուսնկա գիշերին կթափառի տների մոտ։ Չէ՞ որ նա սիրում է մարդկանց և ցանկանում է մոտ լինել նրանց։

Տղան բարձրացրեց գլուխը։

— Հայրի՛կ։

Հայրը քնած էր։

Առավոտյան, նախաճաշից հետո, հայրը վերցրեց հրացանը, գնաց անտառ։ Տղան վերցրեց պայուսակը, գնաց մոտակա գյուղի դպրոցը։ Ցերեկը երկընքում ամպեր կուտակվեցին, օրը մթնեց։ Երեկոյան հորդ անձրև տեղաց։

Քամին հենց ծխնելույզի բերանից խլում էր ծուխը, պատառոտում, խառնում էր անձրևին ու շպրտում փոքրիկ տնակի մերթ այս, մերթ այն կողմը։ Անտառի մերկ ծառերը ծեծվում էին անձրևից, վշվշում էին մելամաղձոտ։ Փոքրիկ տնակի ներսում այդ վշվշոցը լսվում էր ասես հեռվից, խուլ։

Տղան կծկվել էր վառարանի մոտ։ Նա փայտի մանր կտորներ էր գցում վառարանի մեջ, անթարթ նայում էր վառվող կրակին։ Պատուհանի մոտ ապակիները հանկարծ պարուրվում էին լույսով, մարում էին, և թույլ վշվշոցի մեջ, թվում էր, հենց լուսամուտի հետև ահավոր դղրդում էր որոտը։ Տղան թարթում էր աչքերը. գոհ էր, որ տանն է, և ջերմացնում է վառարանը։

Նա վառարանի մոտ դրեց թաց ոտնամանները, վառարանի մեջ գցեց երկու խոշոր կտոր փայտ։ Կրակը բորբոքվեց, սենյակի պատերը լուսավորվեցին, ստվերներ խաղացին շուրջը։ Տղային մի պահ թվաց, թե սենյակում ամեն ինչ երերում է։ Կիսամութի մեջ, սեղանի վրա նշմարեց սև բոքոնը, պանիրը, երշիկի մի խոշոր կտոր, երկու գլուխ սոխ, շաքարամանը, բաժակները։ «Հայրս ուշանում է»—մտածեց տղան, լարեց լսողությունը։ Դրսում վըշվըշում էր հողմածեծ անտառը։



Դուռը թակեցին. նախ՝ կամացուկ, ապա՝ ուժգին։ Տղան հասկացավ, որ հայրը չէր։ Ետ տարավ փականը, բացեց դուռը։

— Ես տուն էի գնում, մոտիկ գյուղը։ Բայց ճանապարհին այս անձրևը...

Աղջիկը տղայի հասակին էր. նրա սև վարսերը թրջվել, կպել էին ճակատին, ջրի շիթերը սահում էին նրա դեմքով։

— Ներս արի,—ասաց տղան։

Նրանք նստեցին վառարանի մոտ։

— Դու այստեղ մենա՞կ ես ապրում,—հարցրեց աղջիկը։

— Հայրս անտառում է,—ասաց տղան։—Ուշանում է։

— Ես սիրում եմ այսպիսի եղանակը,—ասաց աղջիկը։

— Դու կանաչ, ծաղկավոր շրջազգեստ ունե՞ս,—հարցրեց տղան։

— Ունեմ,—ասաց աղջիկը։

Նրանք իրար նայեցին։ Աղջկա աչքերը սև էին։

— Դու բարի՞ ես,—հարցրեց աղջիկը։

— Ես չար չեմ։

— Մայրս ասում է, դժվար պահերին թակիր

պատահած դուռը. բարի մարդիկ կօգնեն:

— Քո մայրը անտառի դիցուհի՞ն է,—հարցրեց տղան:

Աղջիկը ծիծաղեց:

— Այո...

— Ուրեմն, դու անտառի դու՞ստրն ես,—ասաց տղան:

Աղջիկը ծիծաղեց:

Նրա շորերը թաց էին:

— Կմրսես: Հանիր չորացրու,—ասաց տղան:

Աղջիկը սեղմեց շուրթերը:

— Հանիր,—կրկնեց տղան:—Ես քեզ չեմ նայի:

Տղան դեմքով դարձավ դեպի պատը:

— Մեզ մոտ էլեկտրակայան են կառուցում,—ասաց աղջիկը:

— Տեսել եմ:

— Իսկ տեսե՞լ ես ինչպես է աղվեսն հալածում նապաստակին,—ասաց աղջիկը:

— Տեսել եմ, ասաց տղան:—Դու կկվի բույն քանդե՞լ ես:

— Չեմ քանդել,—ասաց աղջիկը:—Ես կենդանիներին սիրում եմ:

— Իսկ մարդկա՞նց:

— Չար մարդկանց չեմ սիրում:



Տղան ցանկացավ հասկացնել նրան, որ ինքը քանդել է կկվի բույնը, որովհետև այդ հետաքրքիր էր, սակայն...

— Ետ չնայես,—սաստեց աղջիկը:

— Քո աչքերում բարի կրակներ կան,—հիշեց տղան:

— Քո աչքերը իմի նման չեն,—ասաց աղջիկը:

Դա ինչ-որ այնպես չէր, ինչպես սպասում էր տղան: Տղան ետ նայեց և տեսավ նրան այնպես, ինչպես նա նստած էր վառարանի մոտ:

— Ա՛հ, մի՛ նայիր,—աղջիկը շրջազգեստով ծածկեց իրեն:

Տղան արագ դարձրեց դեմքը:

— Դու չար ես,—ասաց աղջիկը:

Տղան ցանկանում էր հասկացնել նրան, որ այդպես չէ, որ ինքը չէր ցանկանում ետ նայել, սակայն...

— Չար ես,—լացակումած կրկնեց աղջիկը, և տղան հասկացավ, որ շատ դժվար է համոզել նրան: Տղան լռեց:

Նրանք երկար ժամանակ, ասես, միայն լսում էին անտառի խուլ վշվշոցը: Որոտի յուրաքանչյուր դղրդոցի պահին տղան զգում էր, թե ինչպես է ցնցվում աղջիկը, պատկերացնում էր նրա լարված դեմքը, աչքերը: Տղան ցանկանում էր, որ նա չվախենար:

Ապա աղջիկն ասաց.

— Հիմա կարող ես նայել:

— Ես չեմ ցանկանում նայել քեզ,—ասաց տղան:

— Ես չեմ խնդրում,—ասաց աղջիկը:

Եկավ տղայի հայրը:

— Հայրի՛կը,—բացականչեց տղան:—Հիմա մենք կարող ենք ընթրել:

— Քեզ միայն ընթրիքն էր մտահոգում,—ասաց աղջիկը:

Տղան չհասկացավ նրան:

— Դու չար ես,—պնդեց աղջիկը:

— Հյու՞ր ունենք,—ասաց հայրը:

— Անտառի դուստրն է, հայրիկ,—պատասխանեց տղան:

— Իսկ դու անտառի չար դևն ես,—չհամբերեց աղջիկը:

Ընթրեցին անխոս: Ապա հայրը իջեցրեց լամպի կրակը, և նրանք պառկեցին:

Տղան երկար ժամանակ չէր կարողանում քնել: Նա իրեն մոտիկ լսում էր աղջկա հանգիստ շնչառությունը: Տխրում էր, որ աղջիկը անհոգ քնել է: Տղան չիմացավ, թե ինչպես քնեց: Երազում անտառը կանաչ էր, կանաչի վրա խայտում էին լույսերը, ծաղիկների գույները վառ էին: Տղան բռնել էր աղջկա ձեռքը, տանում էր նրան, և նա կամակոր չէր: Աղջկա վարսերը հարթ էին, աչքերը սև ու բարի, հագած էր կանաչ, ծաղկավոր շրջազգեստ: Տղան տանում էր նրան մարդկանց մոտ, և նա հավատում էր, որ տղան բարի է, որ բոլոր մարդիկ բարի են: Դա նման էր հեքիաթի: Դա անտառի դստեր հեքիաթն էր, ավելի թովիչ, քան հոր





պատմած հեքիաթը անտառի դիցուհու մասին:

Առավոտյան անտառը այնպես էր, ինչպես տղան տեսել էր երազում: Անտառը խաղաղ էր:

Նախաճաշից հետո հայրն ասաց աղջկան.

— Հիմա դու վազիր տուն: Մայրդ սպասում է:

Հայր ու տղա ուղեկցեցին նրան.

— Գնաս բարով, անտառի դուստր,—ձեռքը թափահարելով բացականչեց հայրը:

— Դու էլի կգա՞ս մեզ մոտ,—ձայնեց տղան:

Աղջիկը բարձրացրեց ձեռքը:

— Միայն՝ երբ լինի փոթորկոտ եղանակ, և ես անցնեմ այստեղով:

Նա ժպտաց սև աչքերով, հավաքեց շրջազգեստի քղանցքը, ցատկեց առվի վրայով և ցնցելով հարթ, սև վարսերը՝ վազեց ցած, դեպի ճանապարհը:

Տղան երկար նայում էր նրա հետևից:

# Ձմեռ

ՎԱԶԳԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ

* * *

Գյուղի ճամփան է կորել ձյունի մեջ,
Քամին է պարում դաշտերում անձայր.
Իսկ մեր տնակում զարդերով իր պերճ
Կանաչ եղևնին ժպտում է պայծառ:

Բայց թե նստել է քույրս խռոված.
— Ինչո՞ւ չի գալիս այդ ձմեռ պապին.
Ահա նա եկավ՝ զամբյուղը առած,
Եվ միրգ է տալիս ինձ ու Արփիկին:

Մայրս ժպտում է, աչքերում արցունք,
Օրհնում բոլորին կարոտով անհուն.
Նա էլ մեզ նման դարձել է մանուկ,
Ուզում է գարուն լինի աշխարհում:

Նորից իջավ դաշտերին
Ձմռան սավանը ճերմակ.
Աշնան կանաչը թավիշ
Խոր քուն մտավ հողի տակ:

Փոքրիկ առվակն էլ խռունկ
Ջրի մեջ է թաքնվել.
Առաջվա պես չի երգում
Շրթին գարնան խենթ հովեր:

Չի երևում սայլուղին,
Երկինքն ամպ է, անարև.
Մեր թթենու մերկ ճյուղին
Դեռ դողում է մի տերև...

Նկ. ՀՐԱՉԻԿ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ



# ՓՈՔՐԻԿ ՏՂԱՅԻ ՀԵՏ ՊԱՏԱՀԱԾ ՄԵԾ ՆՈՐՈՒԹՅՈՒՆԸ



ՊԱՆԿՈՒ ՅԱՇ

*(Ռումինական գրող)*



Պատահեց այնպես, որ այդ մեծ նորությունը մի րոպեում տարածվեց աշխարհով մեկ, և չանցած հինգ րոպե, ես լսեցի դռան թակոցը։

— Ո՞վ է։

— Ես եմ, Երկարականջ նապաստակը։ Այստե՞ղ է ապրում այն փոքր տղան, որի անունը Ալեքսանդր է։

— Խնդրեմ, մտեք, այստեղ է ապրում։

Երկարականջ նապաստակը՝ մի մեծ ծաղկեփունջ ձեռքին, ներս մտավ ու ասաց.

— Ես լսեցի այդ մեծ նորությունը և շտապեցի շնորհավորել քեզ։

Բռնելով Ալեքսանդրի ձեռքը ամուր սեղմեց և մի քանի անգամ թափահարելով, ասաց.

— Կեցցե՛ս, փոքրիկս։

Երկարականջ նապաստակի գնալուց հետո, անմիջապես լսվեց զանգի ձայնը։

Շտապում եմ դուռը բացելու։ Ի՞նչ եք կարծում, ո՞վ է. փշոտ Ոզնին՝ ձեռքին մի սիրունիկ եղևնի։

— Այստե՞ղ է ապրում այն փոքրիկ տղան, որի անունը Ալեքսանդր է։

— Խնդրեմ, ներս մտեք, այստեղ է ապրում։

Փշոտ Ոզնին ներս մտնելով ասաց.

— Ես լսեցի այդ մեծ նորությունը և շտապեցի գալ այստեղ։— Ապա գրկելով Ալեքսանդրին՝ համբուրեց նրա այտերը։

— Ապրե՛ս, տղաս, բարո՜վ մեծանաս. ես բերել եմ քեզ համար տոնածառ, զարդարիր նոր տարվա համար։



Բայց դեռ նոր էր դուրս եկել փշոտ Ոզնին, երբ հնչեց հեռախոսի զանգը.

Զրր՜նգ, զրր՜նգ...

Հեռախոսի լսափողից լսվեց խուլ մի ձայն.

—Ալո, դա այն բնակարա՞նն է, որտեղ ապրում է փոքրիկ Ալեքսանդրը։

— Այո։

— Խոսողը Ծուռթաթ Արջն էր։

— Ալեքսանդրը տա՞նն է։

— Այո։

— Կանչեք նրան հեռախոսի մոտ։



Ալեքսանդրը լսափողը ականջին դնելով լսեց.

— Բարի օր, փոքրիկս, ես զբաղված էի մի շարք գործերով և չկարողացա անձամբ գալ, դրա հա-





Նկ. ՍՏԵԼԼԱ ԱՐԻՍՏԱԿԵՍՅԱՆԻ

մար հայտնում եմ հեռախոսով։ Ապրես, հետագայում նույնպես եղիր այդպիսին։ Ես խնդրեցի Արջամայրիկին, որպեսզի քեզ համար թխի շերտավոր կարկանդակ։

Ալեքսանդրը դեռ չէր վերջացրել հեռախոսով խոսելը, երբ ներս մտավ փոստատարը՝ նամակներով լի պարկը շալակած. կային ծրարներ, գույնզգույն բացիկներ, հեռագրեր։ Նամակներից մեկը եկել էր Աֆրիկայից, և նրա մեջ ահա թե ինչ էր գրված. «Ես շատ ուրախ եմ յածիս համար։ Սրտանց շնորհավորում եմ քեզ և առաջին իսկ նավով ուղարկում եմ տասը հատ նարինջ ու մի հատ էլ ավել»։ Ստորագրություն՝ «Նեղոսի կոկորդիլոս»։

Իսկ փոստատարի բերած բացիկի մի երեսի վրա նկարված էր սառցադաշտ, մյուսի վրա գրված էր. «Ողջունում եմ և շնորհավորում Հյուսիսային բևեռից։ Ես իմացա մեծ նորությունը. սեղմում եմ քո ձեռքը։ Ուղարկում եմ մի տակառ լիքը վանիլով պաղպաղակ»։ Ստորագրություն՝ Ձյունաճերմակ Արջ։

Կար նաև մի հեռագիր, ուղարկված հեռավոր Հնդկաստանից։

Ահա թե ինչ էր գրված նրա մեջ։

«Կեցցե՛ս։ Հպարտանում եմ քեզանով, ես կուզեի, որ իմ երեխաներն էլ անեին այն, ինչ դու ես արել։ Ուղարկում եմ բրինձ, որպեսզի քեզ համար կաթնով պատրաստեն»։ Ստորագրություն՝ «Հսկա Փիղ»։

Փոստատարը հազիվ էր դուրս եկել, երբ լուսամուտից ներս ճախրեց Ճամփորդ Աղավնին՝ ծրարը ոտից կապած։

Ես բաց արեցի ծրարը, և գիտե՞ք ինչ կար նրա մեջ. Շնորհավորագիր Աֆրիկայից։

«Եղիր միշտ ուրախ, ապրիր հարյուր տարի. շնորհավորում է քեզ Զոլավոր Զեբրը»։

Եվ ներքևում գրված էր.

«Ուղարկում եմ նաև շոկոլադ. կեր, անու՜շ լինի քեզ»։

Ճամփորդ Աղավնին դեռ չէր թռել, երբ խոսեց ռադիոբարձրախոսը։

— Ուշադրությո՜ւն, փոքրիկ Ալեքսանդր, որ ապրում ես Բուխարեստում։ Ուշադրությո՜ւն։ Խոսում է Ավստրալիան։ Խոսում է Ավստրալիան։ Փոքրիկ և մեծ կենգուրուն ջերմորեն շնորհավորում են քեզ ու նվիրում երկու կծիկ բրդյա թել։ Թո՛ղ տատիկը քեզ համար տաք հագուստ և ձեռնոցներ գործի, որպեսզի չմրսես ձմռանը սահնակ խաղալիս։ Ուշադրությո՜ւն։ Խոսում է Ավստրալիան, խոսում է Ավստրալիան...

Ամբողջ աշխարհը գիտի մեծ նորությունը։ Միայն Ծույլ Կատուն չի շարժվում տեղից, բնած է հանգիստ սենյակի տաք անկյունում և ոչինչ չի իմանում։ Լսելով աղմուկ և ուրախ բացականչություններ, նա արթնացավ, ծմրկտաց, հորանջեց և քորելով ականջը՝ հարցրեց.

— Այդ ի՞նչ է պատահել...

— Ի՞նչ։ Եվ դու չգիտե՞ս,— զարմացավ Փոքրիկ Մկնիկը։— Ալեքսանդրը այսօր առաջին անգամ հագավ իր կոշիկները, առանց օգնության, ձախ կոշիկը ձախ ոտքին, աջը՝ աջ ոտքին։

Ահա և բոլորը։

Ռուս. թարգմ. ԵՐՋ. ԱՌԱՔԵԼՅԱՆ

# Ճանապարհորդություն խաղալիքներում

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Նոր տարի է. մանուկների
Խնդությանը չափ չկա.
Ահա շուտով փայտը ձեռին,
Ձմեռ պապին պիտի գա։
Պիտի բերի Ձմեռ պապին
Խաղալիքներ գույնզգույն.
Սպասում է մեր Ազատին
Ու մտածում դեռ անքուն։
Ո՞ր ճամփով է արդյոք գալու...
Գուցե ճամփան կորցրել,
Մոլորվել է անտառներում,
Կամ չար գայլերն են տարել։
Իսկ թե Ձմեռ պապին չգա,
Տխուր կանցնի Նոր տարին.
Տխրում է սիրտը աղջկա,
Քունն է իջնում աչքերին։
Քունն է իջնում... ու երազին՝
Ձյունոտ ճամփով մի ճերմակ,
Նստած կարմիր իր փայտե ձին,
Սլանում է նա արագ։
Բայց, ա՛յ թե ինչ... ձին է հոգնել,
Աղջկա հույսն է մարում.
Ձմեռ պապին ասես չքվել.
Ո՛չ մի տեղ չի երևում։

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Չորս կողմ սարեր, ձյուն է ու բուք.
Կանչում է նա տխրագին.
— Սարե՛ր, սարե՛ր, չե՞ք տեսել դուք,
Արդյոք, Ձմեռ պապիկին։
— Մենք չգիտենք,— ձայն են տալիս
Հսկա սարերը վերից,—
Ձմեռ պապին ցած է գալիս
Ճերմա՜կ, ճերմա՜կ ամպերից։—
Տուն է դառնում նա հնիհն,

Այն հսկա շենքի բակում, որի ցանկապատի տակ դարսված գերանների վրա ամեն անգամ հավաքվում են երեխաները, ապրում է ոզնու փշերի նման ցից-ցից մազերով շեկլիկ մի տղա։ Թեպետ մի քանի ամիս է ընդամենը, ինչ նա ապրում է այդ բակում, բայց սուտ խոսելու իր արտակարգ ընդունակությամբ, կարճ ժամանակում այնպիսի համբավ ձեռք բերեց, որ «աշխարհի ամենաճշմարտախոս մարդը», բարոն Մյունխհաուզենն անգամ կնախանձեր նրան։

Դա պատահեց այսպես։

.. Մայրամուտ էր։

Ցանկապատի տակ դարսված գերանների վրա,. իրենց սովորության համաձայն, նստոտել էին բակի տղաները։

— Գլխի վրա ցատկելն ի՞նչ է որ,— պարծեցավ Վանիկը։— Ա՛յ, իսկական լողորդը նա է, ով կարողանա երկու րոպե սուզված մնալ ջրի տակ։

## ...ԹԵ ԻՆՉ ՊԱՏԱՀԵՑ ՄԻ

ԱԶԱՏ ՇԱՀԻՆՅԱՆ

— Երկու րոպե՛,— զարմանքից աչքերը ճպճըպացնելով ծոր տվեց տղաներից մեկը։

— Բա այդքան ժամանակ շունչը պահել կլինի՞,— ավելացրեց մեկ ուրիշը։

— Դժվար է, չէ՞,— երջանկությունից փայլող ժպիտը դեմքին հարցրեց Վանիկը։— Դժվար է, բայց ես կարողանում եմ։ Ա՛յ, անցյալ տարի...

. Եվ նա մեծագույն ոգևորությամբ սկսեց քանդել իր ստերի կծիկը, որի ծայրը սատանան անգամ չէր կարող գտնել։ Նա պատմեց, թե ինչպես մի անգամ, Սևանում ամառանոց գնացած ժամանակ նավակով թիավարության է դուրս եկել քեռու հետ, ինչպես թիավարելիս պատահմամբ քեռու գրպանից ջուրն է ընկել նրա ձեռքի ժամացույցը, որը չխանգարելու համար արձակել էր թևից, հետո ինչպես ինքը հանել է շորերը և...



Ինքնաթիռն է իր նստում
Ու քիչ հետո ճերմակաթև
Ամպերի մոտ է հասնում:
Եվ ամպերին է նա դիմում
Աղաչանքով տխրագին.
— Ամպե՛ր, ամպե՛ր, չե՞ք տեսել դուք.
Արդյոք, Ձմեռ պապիկին:
— Մենք չգիտենք,— ձայն են տալիս
Թուխ-թուխ ամպերը վերից,—
Ձմեռ պապին ցած է գալիս
Հեռու՜, հեռու՜ աստղերից:
Ցած է իջնում և այս անգամ
Հրթիռանավն է նստում,
Ու դեռ չանցած երկու վայրկյան,
Աստղերի գիրկն է հասնում:
Եվ ի՜նչ տեսնի... Լուսնի վրա,
Հենվելով հաստ մահակին,
Ձմեռ պապն է գալիս ահա՝
Նվերները շալակին:
— Վա՜յ, պապի ջան, ախր այդպես,
Ծանր բեռը քո ուսին,
Դու ե՞րբ պիտի երկիր հասնես,
Արի, թռչենք միասին:
— Չէ, կատաղեմ ես ձյունի տակ
Ու չեմ նստի քո կողքին,
Լսել եմ, որ դու շարունակ
Բարկացնում ես տատիկին:—
Նորից տխրում է Ագապին,
Քիչ է մնում լաց լինի.
— Ներողությու՜ն, Ձմեռ պապի,
Էլ չարություն չեմ անի...
Ձմեռ պապին ներում նրան
Ու համբուրում է սիրով,
Եվ միասին ուրախ-ուրախ
Ցած են իջնում հրթիռով:

# ՓՈՔՐԻԿ ՍՏԻՑ

Նկ. ՎՈԼՈԴՅԱ ՍԱՎԱԴՅԱՆԻ

*— Խորը շունչ քաշեցի ու հո՛պ... սուզվեցի մինչև հատակը: Երկար ժամանակ շունչս պահած ժամացույցն էի որոնում ջրի տակ: Չգիտեմ որքան ժամանակ էր անցել, երբ մեկ էլ, հո՛պ... հատակի քարերի արանքում մի փայլուն բան նկատեցի: Դե, մի խոսքով, ժամացույցը ձեռքիս դուրս եկա ջրի երեսը ու ինչ տեսնեմ... Քեռիս նավակում չէր՝ կարծելով թե խեղդվել եմ, շտապով սուզվել էր՝ որ ինձ ջրից հանի: Մի խոսքով, երբ դուրս եկավ ու ինձ տեսավ նավակում, զարմանքից քար կտրեց: Իսկ ես, հո՛պ, նրան եմ մեկնում իր ժամացույցը, որը, իհարկե, ծովային տեսակի էր և չէր փչացել:*

*— Լա՛վ, բա ո՞նց այդքան դիմացար ջրի տակ,— հարցրեց մեկը:*

*— Ամենակարևորն այն է, որ քեզ չկորցնես, ճիշտ շնչես և հետո, դե հետո մեծ կամքի ուժ ունենաս:— Եզրափակեց Վանիկն իր հերոսական պատմությունը ու տեղի կանգնեց:*

*«Ա՛յ թե լողորդ է, հա՜...»— մտածում էին տղաները: Եվ որովհետև նրանք դեռ ծանոթ չէին Վանիկի ֆանտաստիկ փչոցներին, ուստի մեծ ցանկություն հայտնեցին մոտակա ջրանցքը գնալ նրա այդ հրաշագործությանը գոնե մի անգամ ականատես լինելու:*

*— Դե գիտեք, տղերք,— կմկմաց Վանիկը,— ախր, բժիշկները հիմա ինձ արգելել են երկար ժամանակ սուզված մնալ ջրի տակ:*

*— Ինչի՞:*

*— Սրտի խփոցներ ունեմ, ա՛յ թե ինչի:*

*Չնայած Վանիկը ամեն կերպ աշխատում էր հրաժարվել ջրանցք գնալու առաջարկից, բայց ընկերների կասկածներին տեղիք չտալու համար, ստիպված համաձայնեց, միայն սուզվելու այդ սքանչելի արարողությունը չկատարելու պայմանով:*

* * *

Մայրամուտի շառագունած երկինքը արտացոլվել էր հանդարտ հոսող ջրերի վրա։

Տղաներն իսկույն հանվեցին և իրար հրմշտելով թափվեցին ջուրը։

«Ա՜յ քեզ փորձանք... Հիմա ի՞նչ պիտի անեմ, հը՞,— ինքն իրեն հարցնում էր Վանիկը։— Ա՜յ եթե հանկարծ հրաշքով կարողանայի լողալ։ Գուցե դա այնքան էլ դժվար բան չէ, հը՞»։

Եվ այն միջոցին, երբ տղաները զբաղված էին իրենց ուրախ կատակներով, Վանիկը մոտեցավ, բռնեց ափի դուրս ցցված քարից ու դողդողալով ցած կախվեց։ Բայց հանկարծ ձեռքը պոկվեց քարից և նա արագությամբ զահավիժեց ջրի հատակը։

Թանձր կապույտը պատեց նրան։ Աչքերը մթնեցին, և մի ահավոր միտք կայծակի նման ճայթեց նրա ուղեղում. «մե՛ռա...»

Տղաները նկատեցին և կարծելով, թե Վանիկը ցույց է տալիս սուզվելու իր բարձրագույն արվեստը, արագ լողալով մոտեցան։

— Ա՜յ, կտեսնե՛ք, նա երկու րոպե կմնա ջրի տակ։

— Իսկ ես ասում եմ, որ մի րոպե էլ չի կարող...

— Այդ ինչպե՞ս չի կարող։

— Սրտի խփոցներ ունեցող մարդը երկար չի կարող ջրի տակ մնալ։

Մինչ նրանք զբաղված էին զանազան ենթադրություններ անելով, ջրի երեսին հայտնվեց Վանիկը՝ աչքերը սարսափից չռված։ Նա հուսահատ ծեծկռտեց ջուրը, ձեռքերը թափահարելով ինչ-որ բան փորձեց հասկացնել տղաներին, բայց ձայնի փոխարեն խուլ բղկբղկոցներ արձակելով, նորից սուզվեց։

Տղաները կարծեցին կատակ է անում։ Բայց երբ մեր «Լողորդը» օրհասական ճիգեր գործադրելով մի վերջին անգամ ևս հայտնվեց ջրի երեսին ու այլևս դուրս չեկավ, ընկերներից մեկը անհանգիստ բացականչեց.

— Ի՞նչ եք մեխի նման ցցվել։ Գուցե մարդը խեղդվում է, իսկ մենք հանգիստ զրույց ենք անում։

Թեև ոչ մեկը չէր ուզում հավատալ դրան, բայց մութ կասկածը ստիպեց նրանց վերջապես տեղից շարժվել։

Ահա նրանք դուրս բերեցին մեր դժբախտ «ջրահեղձի» կիսակենդան մարմինը, սապնաջրի նման սպրդնած դեմքով ու հանգած գիտակցությամբ։ Տղաները Վանիկին շտապով պառկեցրին ափին և սկսեցին արհեստական շնչառություն տալ նրան։ Բայց վերջինս շարունակում էր դատարկ պարկի նման փռված մնալ պառկած տեղում։

— Ի՞նչ եք մի գլուխ ձեռքերը շարժում։ Հարկավոր է գլխի վրա կախ գցել, որ ջուրը դուրս թափվի,— ասաց տղաներից մեկը։

Եվ իրոք, երբ Վանիկին գլխիվայր կախ գցած մի քանի անգամ ուժեղ թափահարեցին, նա խուլ տնքաց, բաց արեց աչքերը և մի սրտառուչ երկարատև զռռոցով ավետեց բոլորին իր վերադարձը դեպի կյանք։





## ՆԱՄԱՆԱՎԱՆԴ

— Հայրիկ, արի այսօր, նամանավանդ, գնանք կինո,—ասում է տասներկուամյա մի տղա:

— Այդ ի՞նչ ես ասում: Ինչպե՞ս թե՝ նամանավանդ, գնանք կինո: Մի՞թե դա հայերեն է,—զարմանում է հայրը:

— Դե ես այդ բառը նոր եմ, նամանավանդ, լսել: Իսկ մեր դասատուն ասել է, որ երբ մի նոր բառ ենք լսում կամ սովորում, պետք է հաճախ օգտագործենք, որ, նամանավանդ, չմոռանանք:

— Բայց, ախր պետք է իմանալ, թե բառը երբ և ինչպես օգտագործել, որպեսզի անհեթեթություն չստացվի:

— Է՜հ, ոչինչ, թող սկզբում անհեթեթ ստացվի, իսկ վերջում, նամանավանդ, կդառնա հեթեթ:

— Ինչպե՞ս թե հեթեթ: Այդ ի՞նչ նոր բառ է:

— Դե ես քո ասած բառից ժխտական ածանցը, նամանավանդ, դեն գցեցի և մնաց դրական առումը՝ հեթեթ:

ԳՐԻԳՈՐ ՀԱԿՈԲՅԱՆ

## ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀՈՒՄՈՐ

Ուսուցիչը հերթականությամբ ստուգում է աշակերտների տնային հանձնարարությունները:

—Դու ճիշտ ես լուծել խնդիրը,—կանգ առնելով աշակերտներից մեկի մոտ, ասում է նա և ավելացնում,—նույն խնդիրը գրատախտակին լուծիր և բացատրիր, այնպես, որ չհասկացողների համար պարզ լինի:

— Խնդիրը մենք միասին ենք լուծել, ես և տատս, դրա համար էլ մենակ չեմ կարող,—պատճառաբանում է աշակերտը:

— Ինչու՞ գիրքդ այդքան հնացած ու պատառոտված է,—դիմում է հայրը տղային:

Տղան մի պահ մտածում, ապա պատասխանում է.

— Մեր դասարանցի Վաչիկի գիրքը բոլորովին նոր էր, ուսուցիչը նկատողություն արեց, թե նա գիրքը այնքան չի բաց արել, որ բոլորովին նոր է մնացել: Դե, ես էլ այնպես եմ վարվում, որ ուսուցիչը ինձ էլ նկատողություն չանի:

ՌՈՒԲԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Նկ. ՍԵԴԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



# „5" ՀԱՄԱՐԸ

ԳԱՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Նա լվացքի շորերը
Ցանց է շինել իր համար,
Խելքը տված գնդակին
Թռչկոտում է վեր ու վար:

Հո՛պ-խփում է նա քացով,
Հետն էլ ուրախ ոստոստում,
Եվ գնդակի հարվածով
Փոած շորը կեղտոտում:

Նրան ո՞վ չի ճանաչում
«5» է գրված իր մեջքին.
Նա մազաչափ չի խղճում
Լվացք անող տատիկին:

— Հո տղա չէ, ցավ է, վի՜շտ.
Դժգոհում է տատը ծեր.
-Մեջքի վրա «5» է միշտ,
Իսկ գլխի մեջ՝ երկուսներ:





Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# ԺԼԱՏԸ

Մի հարուստ վաճառական իր որդու համար ուսուցիչ էր որոնում։ Հարմար մարդիկ քաղաքում շատ կային, բայց երբ հարուստը նրանց առաջարկում էր իր պայմանները, նրանք իսկույն հրաժարվում էին։ Վաճառականն ուզում էր, որ ուսուցիչն ապրի իրենց տանը, բայց սնվի մի այլ տեղ։

Լսելով այս մասին, խանութպանի ընկերներից մեկը, որ շատ կատակասեր և ուրախ մարդ էր, հարցրեց նրան.

— Լսել եմ, որ քեզ ուսուցիչ է պետք։

— Այո, միայն լավը։

— Եվ որպեսզի նրան հարկ չլինի կերակրել…

— Այո, այո, ինքդ լավ ես հասկանում… մի կերպ ապրում ենք… Դե, ավելորդ բերան է։

— Այսպես ուրեմն, ես գիտեմ այդպիսի մեկին, ճիշտ և ճիշտ այնպիսին, ինչպիսին դու ես ուզում. չի ուտում, չի խմում, միայն հարավային քամով է սնվում։

— Ճի՞շտ։ Ա՜յ քեզ հրաշք։ Ես անպայման կվարձեմ նրան, հենց վաղը։ Ուրախացած, ժլատն իսկույն շտապեց տուն, որպեսզի լուրը հայտնի կնոջը։

— Քո գլխումն է հարավային քամի, խելագարվե՞լ ես, ի՞նչ է,— հարձակվեց նրա վրա կինը, երբ նա պատմեց իր լուրը,— ոչ մի դեպքում չի կարելի վարձել նրան. հարավային քամով… Իսկ եթե փչի հյուսիսայի՞նը, կամ արևմտյա՞նը, կամ բոլորովին քամի չլինի՞, այդ դեպքում մենք ստիպված պետք է լինենք կերակրե՞լ նրան, ի՞նչ է…



Նկ. ՖԼՈՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

## ԵՍ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒՄ ԵՄ ԿԱՄՔՍ

Այսօրվանից ես սկսում եմ դաստիարակել կամքս,— ասաց Արտաշեսը տնեցիներին։

— Իսկ ինչպե՞ս պիտի դաստիարակես,— հարցրեց տատիկը։

— Ահա թե ինչպես. ասենք թե ես դասերս չեմ պատրաստել և ուզում եմ հեռուստացույց դիտել. մի՛ թողեք։ Որրան էլ գոռամ, աղմկեմ, եթե նույնիսկ տնարերս պատառոտեմ, եթե ձայնս հարևանների տներում էլ լսեն, չթողնեք։ Կամ, ասենք թե նստած պարապում եմ, ու հանկարծ դրսից ֆուտբոլի գնդակը դիպչում է պատուհանին։ Դե ես, իհարկե, կուզենամ դուրս թռչել, հասկանու՞մ եք, առանց ինձ ի՞նչ ֆուտբոլ։ Բայց դուք մի՛ թողեք, բռնեք ինձ ու մի՛ թողեք։

— Սպրե՛ս, ապրե՛ս,— ասաց տատիկը քմծիծաղով,— կամքդ դաստիարակելու միջոցը գտել ես…

# Մեխ զարկող տղան





ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

Ա.

— Զբաղվում եմ,—ասացի ես, առանց Վահանի կողմը նայելու։—Դժվար գործ է։ Նախ՝ մեխը հարկավոր է սուր ծայրով հպել գերանին ու բութ մատով սեղմել։ Հետո մուրճը թափով բարձրացնել ու…

Հենց առաջին հարվածից մեխը թաղվեց փայտի մեջ։ Ես գոհունակությամբ ժպտացի ու բարձրացրի գլուխս։ Վահանը կանգնել, նայում էր վերից։ Այդ ինձ դուր չեկավ։

— Ի՞նչ ես սառել,—ասացի ես։—Շատ դժվար բան է, —Վահանը շարունակում էր վերից նայել ինձ։—Ուզո՞ւմ ես փորձել։ Հեծիր գերանի մյուս ծայրին։ Զիջում եմ։ Մեխ շատ ունեմ։ Կտամ։ Մուրճն էլ դու ճարիր։

Վահանը, վերջապես, խոսեց.

-- Դատարկ բաներ են։ Մեխ զարկել։ Օգո՞ւտդ ինչ է։ Գերանն է ափսոս։

— Հապա՝ փորձիր։ Դատարկ բան է, բայց կարո՞ղ ես մի հարվածով…

Վահանը պպզեց։ Նա ինձ այլևս վերից չէր նայում ու այդպես ավելի լավ էր։

— Լավ ես զարկում։ Նախանձում եմ։

— Ձեռ ես առնում,—կասկածեցի ես։

—Չէ՛, լուրջ եմ ասում։ Թե քո պես մեխ զարկող ունենայի՜նք…

— Իզուր չսկսես։ Լավ է՝ գնաս գործիդ։

Շատ գոհ էի, որ նրան դուր է եկել իմ վարպետությունը։ Բայց որ սկսեց համոզել… Պրծում չկա։

— Գնա՛, գնա՛,—ասացի ես։—Խանգարում ես։

Վահանը կանգնեց։ Չափեց հայացքով, սուլեց և ուսերը վեր քաշեց։ «Հիմա կգնա»—մտածեցի ես ու հանգիստ շունչ քաշեցի։ Թիթեղյա ամանից մի սրածայր ու երկար մեխ հանեցի, սեղմեցի գերանի մեջ ու…

Մեխը դուրս թռավ տեղից։

— Տեսա՞ր,—Վահանը ծիծաղեց։—Պատահում է, ոչինչ։ Բայց գերանները բակում երկար չեն մնա։ Այն ժամանա՞կ ինչ կանես։

— Կմտածեմ,—խոստացա Վահանին ու անհոգ ասացի.—Դու ինձ չես համոզի։ Լավ կլինի էլ չխանգարես։

Վահանը նորից սուլեց ու հեռացավ։

Բ.

Դասամիջոցին Նվարդիկը ինձ մոտեցավ։ «Վահանը տեղ է հասցրել,—մտածեցի ես։ —Կսկսվի»։ Ուզեցի խուսափել։ Չհաջողվեց։

— Դու տեսե՞լ ես թերթը,—հարցրեց Նվարդիկը, բաճկոնիս թևքից բռնելով։

— Ի՞նչ թերթ։

— «Կայծակը»։

— Չեմ տեսել։

— Առավոտյան եմ փակցրել, նոր համար է։ Գնա տես։

— Չեմ ուզում։

— Շատ հետաքրքիր է։

Իհարկե, հետաքրքիր կլինի։ Ես արդեն գլխի էի ընկել, թե բանն ինչումն է։ Ինձ են նկարել։ Չգիտեմ ինչու, միշտ ինձ են նկարում։ Հիմա էլ

Երևի, երբ Վահանը արդեն պատմել է, նկարած կլինեն անճոռնի, բարալիկ ոտներով, հսկայական գլխով մի մարդ, որը ինձ բոլորովին նման չի, բայց տակը գրված է, թե ես եմ, ու կամ գերանին հենված, կամ ծուռ մեխը ձեռքիս։

— Ասում ես՝ հետաքրքի՞ր է,— թունոտ հարցրի ես։

— Շա՛տ։ Քե՛զ են նկարել։

— Գյուտ արեց։

Չկարողացա ազատվել Նվարդիկի կպչուն ձեռքից։ Տարավ թերթի մոտ։ Երբ մոտեցանք, հավաքվածները անմիջապես տեղ տվեցին մեզ։

«Մեր դպրոցի լավագույն մեխ զարկողը» —կարդացի թերթի վրա։ Հետո տեսա իմ նկարը։ Շատ նման էր ինձ։ Նայեցի հավաքվածներին։ Նրանք էլ զարմացած ժպտում էին։ Մինչև դասերի վերջը հանգիստ չթողեցին։ Ամենից շատ ցածր դասարանցիներն էին շուրջս պտտվում։ Երևի նրանք էլ երբեք չէին տեսել, որ մարդուն գովեն մեխը լավ զարկելու համար։

Տուն գնացինք Վահանի հետ։

Ես նրան վաղորոք ասացի.

— Չհամոզես։ Չե՛մ ուզում։

— Մի վախենա։ Համոզելու տրամադրություն չունեմ։

Մինչև փողոցի անկյունը քայլեցինք լուռ։ Երբ թեքվեցինք նրբանցք, Վահանը ասաց.

— Գերանի մյուս ծայրը կտա՞ս ինձ։

— Ինչո՞ւ,— շունչս բռնվեց։

— Ուզում եմ ես էլ սովորել, մի հարվածով...

— Դժվար է։

— Կսովորեմ։ Մեխ էլ կտա՞ս...

— Կտամ։

— Մեր արհեստանոցի համար որոշել ենք փայտե դազգահներ պատրաստել։ Տղաներով։

— Գիտեմ։

— Լավ ռանդողներ կան։ Ես արդեն սովորել եմ ուզածիդ պես սղոցել։ Բայց ոչ ոք չկա, որ մեխ զարկել իմանա։ Ինչքան մեխ ունեինք՝ ծռվեցին։ Տխուր բան է։

— Տխուր է,— համաձայնեցի ես։

— Շուտ կսովորե՞մ,— հարցրեց Վահանը։

— Դժվար թե,— ասացի ես։— Վարժվել է հարկավոր։ Ուզու՞մ ես, կօգնեմ։

Գ.

Արհեստանոցում կար չոր փայտի յուրահատուկ հոտ, ատաղձագործական սոսնձի բույր, թեփ ու տաշեղի մեծ-մեծ շեղջեր։ Անկյունում, պատուհանի առաջ, տղաներից մեկը ռանդում էր։ Տաշեղները տարածվում էին գետնին՝ օձագալար ու նուրբ, Վահանը կտրատում էր չորսուների գլխամասերը, իսկ նրա կարճահասակ ու գնդլիկ օգնականը դուրով փորում-հանում էր ավելորդ տեղերը։

Աղջիկները աշխատում էին օգնել։ Բայց ինչպես միշտ, տղաները ձևացնում էին, թե նրանց օգնության կարիքը չեն զգում։

Վահանից քիչ հեռու, մեկը ծնկել էր գետնին ու աշխատում էր մեխերով ամրացնել հենց նոր սոսնձված փայտամասերը։ Նրա շուրջը անհուսալիորեն ծռված մեխերի մի ամբողջ կիտուկ կար։

Ոչ ոք չնկատեց ինձ։

Մի քանի քայլ առաջացա։

— Վահա՛ն,— լսեցի ես Նվարդիկի ձայնը։

Վահանը գլուխը բարձրացրեց ու տեսավ ինձ։

— Մի քիչ ուշացել ես,— ասաց նա։— Ոչինչ։ Մի տես ինչպես է տանջվում,— Վահանը գլխով ցույց տվեց մեխ զարկողի կողմը։— Գոնե կարողանաս գործը հասցնել։ Տիրան,— ձայն տվեց նա,— մուրճը տուր Կարենին, ինքդ էլ կանգնիր մոտը, որ սովորես։

Մուրճը թեթև էր։ Բայց ոչինչ։ Բթամատով մեխը սեղմեցի փայտի մեջ ու...

Երբ բարձրացրի գլուխս, տեսա, որ բոլորը գործը թողած նայում են ինձ։

Վահանը աչքով արեց, վերցրեց սղոցը ու եռանդով կպավ գործի։

Իսկ ես մեխերի տուփը առնելով, քաշվեցի մի կողմ, ծռված մեխերից հեռու։



## Դ.

Մի քանի շաբաթ հետո դազգահները արդեն պատրաստ էին։

—Էլ գործ չկա՞,—հարցրեցի ես։

— Ինչքան ուզես,—ասաց Վահանը։—Բայց քեզ էլ չենք անհանգստացնի։ Հիշո՞ւմ ես, անցյալ օրը որոշեցինք վերանորոգել բոլոր կոտրված նստարաններն ու պարտեզի ցանկապատը։

— Կկարողանա՞նք,—հարցրեցի ես։—Գուցե վարպետի՞ տան։

— Կկարողանանք։ Թե որ մեր ձեռքից գալիս է, ինչո՞ւ վարպետ կանչենք։

— Մեխելու գործ կլինի՞։

— Ինչքան ուզես,—ասաց Վահանը։

— Ես էլ կգամ օգնելու։

— Գուցե ժամանակ չունես,—ասաց Վահանը։

Չպատասխանեցի։

Պարզ է, չի ուզում։ Մեխել սովորեցրի, օգնեցի ու հիմա էլ արդեն պետք չեմ։

— Ես հենց այնպես ասացի։ Իսկապես, որ ժամանակ չունեմ։

— Ափսո՜ս,—ասաց Վահանը։—Կարծում ես լավ մեխելը չնչի՞ն բան է։ Բայց հենց որ միտքդ փոխվի, անպայման արի։

— Կմտածեմ,—խոստացա ես։

Արհեստանոցի հանդիսավոր բացմանը չմնացի։

Երբ բակ մտա, առաջին հերթին տեսա բարձր հիշոտնուկները, որոնց վրա դրված էր մի մեծ գերան։ Գերանի վրա կանգնած էր մեկը, ցածում՝ մի ուրիշը։ Նայն շրջանակի մեջ գտնվող սղոցով, նրանք կտրում էին գերանը։ Երբ սղոցը հասավ ծայրին, լսվեց մի ուժեղ ճռինչ։

— Ի՞նչ պատահեց,—հարցրեց ցածում կանգնածը։

Գերանի վրայի մարդը մաքրեց ճակատի քրտինքն ու ասաց.

— Ատամները կոտրվեցին։ Գերանին մեխեր են խփված։

Ցածի մարդը ունելին պարզեց ընկերոջը։

Ես վազեցի տուն։

— Վաղվանից մի քիչ ուշ կգամ,—ասացի տատիկիս։—Արհեստանոցում գործ ունեմ։ Հիմա էլ նստարանները ենք նորոգելու...



Նկ. ԱԻԴԱ ԲՈՅԱՋՅԱՆԻ



ՌՈՒԲԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

«Արևի հետ զարթնում եմ ես,
Արևի հետ մտնում եմ քուն,
Բայց բոլորը, արի ու տես,
Արևին են միայն ՙհարգում՚»։
Միտք էր անում միշտ Վահանը,
Ու չէր գտնում պատասխանը։
Մի մանուշակ «ախ» քաշեց խոր.
— Ես ծիլ էի սև հողի տակ,
Արևն ինձ կյանք տվեց մի օր,
Բայց դու արիր ինձ ոտնատակ։
Իր զայրույթը հազիվ պահած՝
Ծեր այգեպանն ասաց.— Վահա՛ն,
Երբ արևն է վեր բարձրանում,
Այգում մրգերն են քաղցրանում.
Դու քաղում ես տանձ ու խնձոր՝
Ծառերն անում ճղակտոր։
Այդ ժամանակ լճում մոտիկ
Լող էր տալիս մի խեղճ բադիկ,
Այգեպանին լսեց հուզված
Ու Վահանին այսպես ասաց.
— Ջինջ ու բարի արեգակը
Տաքացնում է իմ լճակը,
Որ լողանամ չրում, խաղամ,
Իսկ դու անվերջ լիճը խաղաղ
Պղտորում ես, ինձ քարկոծում,
Քարերով ես լիճը լցնում։
Չար Վահանին ով որ տեսավ,
Նախատինքի խոսքեր ասավ։
Ու Վահանը գտավ ճարը,
Փախավ, ելավ մոտիկ սարը։
Նստեց տխուր... Ամպը գոռաց,
Երկնքից հորդ անձրև տեղաց,
Վահանն այնպե՜ս թրջվեց, սառավ,
Մի կուչ եկած մկնիկ դարավ։
Ո՜նց է դողում, ո՜նց է լալիս.
«Թաց շորերով ո՜նց տուն գնամ...»
Բայց այն ո՞վ է՝ ձայն է տալիս.
«Փոքրիկ տղա, մի՛ վախենա...»
Այդ արևն էր. մեղմիկ ժպտաց
Ու չորացրեց շորերը թաց։
Վահանն ուրախ նայեց վերև,
«Ների՛ր,—ասաց,—կարմի՛ր արև...»



# ՍԵՎ ԿԱՐԿՈՒՏ

*ԲԵՆԻԿ ՍԵՅՐԱՆՅԱՆ*

— Այդ աշուն գործ փնտրելու համար երկրից-երկիր անցնելով, հասա Բուդապեշտ,—այսպես սկսեց իր պատմությունը հայրենադարձ մի ծերուկ՝ Զանգի—Կարապետը:

— Անսովոր աշուն էր: Եվրոպան իր օրում այդպիսի բքաշունչ, անձրևոտ, ցուրտ աշուն չէր տեսել: Օրերով հողմ ու անձրև: Ցուրտն արցունք էր քամում: Քաղաքի փողոցները՝ դատարկ, շուկաներն՝ ամայի: Ոչ ոք չէր ուզում գլուխն իր տաքուկ անկյունից դուրս հանել:

Ես էլ՝ գործազուրկ բեռնակիր, անօթի-ծարավ, համարյա տկլոր: Հագիս ծվենները կրակի բերանը տայիր՝ շորի հոտ չէր գալ: Քամին հալածում էր, անձրևը մտրակում, ցուրտը նշտարում: Իսկ անտեր քաղցը, հազար գլուխ տզրուկ դառած, ներսից ծծում, չորացնում էր դատարկ ստամոքսը:

Մի կտոր չոր հաց վաստակելու հույսով անցնում էի թաղից-թաղ, բակից-բակ, բախում սրա-նրա դուռը, գործ խնդրում:

Այդ թափառումների ժամանակ ականատես եղա մի զարմանալի դեպքի, որ հրաշք պիտի թվար, եթե աչքիս առաջ կատարված չլիներ: Նոր էի մտել Բուդապեշտի խոշոր հրապարակներից մեկը, երբ, ասես հրաշքով, գլխիս սև կարկուտ տեղաց: Այո՛, այո՛, սև կարկուտ: Պատսպարվելու անկյուն չկար: Ձեռքերով ծածկեցի գլուխս ու պպզեցի: Մի քիչ այդպես մնալուց հետո մեկ էլ աչքերս բացեմ, շուրջս նայեմ ու ի՞նչ տեսնեմ: Սրտաճմլիկ մի տեսարան: Հրապարակը ծածկված է սառած ու գետնին թափված ծիծեռնակներով: Նրանց մի մասը անհուսորեն թպրտում էր, վիզն աջ ու ձախ ոլորելով, ասես օգնություն աղերսում, մյուս մասը քարացել, անշարժ ընկել էր ասֆալտին: Աչքիս չհավատալով, վերցրի հենց ոտքերիս մոտ թպրտացող ծիծեռնակը: Նրա խոնավ փետուրներից, փայտացած տոտիկներից մի այնպիսի ցուրտ զգացի, որ կարծես սառույցի կտոր էի առել ձեռքս: Սիրտս մղկտաց: Ծիծեռնակը բոխս մեջ տարա ծոցըս: Ուզում էի մարմնիս ջերմությամբ կյանք ու շունչ տալ նրան: Բայց հետո, երբ նայեցի շուրջս, հուսահատությունից քիչ մնաց փղձկայի: Ո՞ր մեկին փրկես, ամբողջ հրապարակը ծածկվել էր ծիծեռնակով:

Դաժան սառնամանիքների, բքի ու անձրևի զոհ դարձած այդ անմեղ թևավորներն իրենց հոգևարքըն էին ապրում: Դեպի տաք երկրները չվելու ճանապարհին կորստաբեր աղետի ենթարկվելով, նրանց շաղված ու շփոթված երամները անուժ թափվում էին գետնին, կտուրների վրա, խուժում պատշգամբներն ու ձեղնահարկերը, պատսպարվելու տեղ փնտրում:

Դժվար է գուշակել, թե ինչո՞վ կվերջանար ծիծեռնակների այդ սրտաճմլիկ ողբերգությունը, եթե նույն օրն ևեթ քաղաքի բնակիչները գործի չանցնեին: Հունգարական Թռչնաբանական ինստիտուտի ու կենդանիների պաշտպանության ընկերության կոչով նրանք ոտքի ելան: Տուժած թռչունների համար շտապ կերպով հատուկ շենքեր առանձնացվեցին, կեր հայթայթվեց: Մի քանի օր շարունակ ամեն կողմից հավաքում, բերում էին աղետի ենթարկված ծիծեռնակներին: Այստեղ նրանք գտնում էին տաք անկյուն, խնամք, կեր, թռչունների մի մասին ձեռքով էին կերակրում:

Շատերի հետ միասին ես էլ էի տարվել ծիծեռնակների հոգսով: Մոռացած ցուրտ, քաղց, իմ անապահով վիճակը, ես բարձրանում էի շենքերի տանիքները, մտնում ձեղնահարկերը, կիսակենդան թռչուններին հավաքում, ծոցս էի լցնում, տանում հանձնում ու նորից դուրս գալիս գործի: Այս ամենը կատարում էի մի այնպիսի սրտացավությամբ, որ կարծես հարազատ զավակիս, քրոջս, եղբորս կյանքը փրկելիս լինեի: Շուտով երկրի բնակչության հավաքած ու հանձնած ծիծեռնակների թիվը հասավ մոտ իննսուն հազարի: Իննսուն հազար կյանք...

Բայց դա դեռ բոլորը չէր: Հարկավոր էր աղետից փրկված թռչուններին օգնել, որ նրանք հաջող շարունակեին իրենց չուն. հասնեն տաք երկրներ: Չէր կարելի թողնել բախտի քմահաճույքին:

Հենց այստեղ էր, որ գործի մեջ մտան փոխադրական միջոցները՝ գնացքները, ինքնաթիռները:

Ծիծեռնակներով բեռնված առաջին էշելոնը մեկնեց Ստամբուլ: Այդ էշելոնի մեջ էի նաև ես: Երևի մարդիկ տեսել, զգացել էին իմ սրտացավությունը, որ ուղեկցողները ընտրելիս չմոռացան ինձ: Մեր անելիքը շատ պարզ էր. ճանապարհին պիտի կերակրեինք ու ջրեինք ծիծեռնակներին, տեղ հասնելուց հետո մեր ձեռքով բաց թողնեինք ու վերադառնայինք Բուդապեշտ:

Գնացք նստելու պահից ես ընկել էի երազների աշխարհը: Ինձանից երջանիկ մարդ դժվար թե գտնվեր: Ես գործ ունեի, անելիք: Ինձ վստահել էին: Ես կյանք, ազատություն պիտի տայի հազարավոր թևավոր բարեկամների: Վանդակներից դուրս գալով, նրանք պիտի թռչեին երկրից-երկիր, ցրվեին աշխարհով մեկ, գարնան համբավ տանեին մարդկանց: Եվ իմ թափառ կյանքում ուր էլ գնայի, որտեղ էլ լինեի, պիտի հանդիպեի նրանց, տեսնեի ու զգայի, որ այս ծով—աշխարհում մի բարի գործ էլ ես եմ կատարել, մի լավ գործ էլ ինձնից է սկիզբ առել:

Կարծես իմ սիրտն էլ ամեն տեսակ հոգսից, վշտից, անապահով կյանքից, գործ փնտրելու թափառումներից ազատ, նրանց հետ թռչելու էր, բարձրանալու էր վեր, որ այնտեղից նայի այս աշխարհին՝ ծով ու ցամաքին:

Մեր ուղևորությունը երկու օր տևեց: Ամեն ինչ կարծես հաջող էր ընթանում: Հաջող պիտի տեղ հասնեինք, եթե Ստամբուլի մոտ, մի փոքրիկ կիսակայարանում մեր գնացքը երկար չպահեին: Գի՞ծըն էր փչացած, թե՞ մի ուրիշ բան էր խանգարում, չգիտեմ, բայց ժամերն անցնում էին, իսկ մենք շարունակում էինք կանգնած մնալ:

Վրա հասավ իրիկունը: Շրջապատը թաղվեց մթության մեջ: Միայն կիսակայարանի լապտերն էր հազիվ կայծկլտում: Թարմ ջուր վերցնելու պատրվակով ես ուզեցի իջնել, մի տեղեկություն բերել ընկերներիս:

Հազիվ էի վագոնից մի քանի քայլ հեռացել, երբ մթության մեջ երկու հոգի վրա ընկան, թևերըս առան իրենց ուժեղ աքցանների մեջ ու քարշ տալով տարան: Ժամանակ չունեցա նույնիսկ ձայնծպտուն հանելու: Ովքե՞ր էին նրանք: Ո՞ւր էին տանում: Ի՞նչ էին ուզում ինձանից: Ոչ կյանքըս էր թանկ ինձ համար, ոչ էլ արժեքավոր բան ունեի մոտս, որ թալանեին: Թող տանեն:

Շուտով ես ինձ գտա մութ ու խոնավ մի նկուղում: Դուռը վրաս փակեցին: Ամբողջ գիշեր մնացի մեն-մենակ: Մտքով դարձյալ ծիծեռնակների հետ էի:

Առավոտյան ինձ հարցաքննության տարան, և նոր միայն զգացի, որ ավազակների ձեռք չէի ընկել: «Այս լավ է, կհարցնեն, կիմանան, թե ով եմ, կտեսնեն, որ լրտես կամ գող չեմ, ազատ կարձակեն»—անցավ մտքովս: Բայց այդպես չեղավ: Հարցաքննող սպան իմ պատասխաններն ընդունում էր հեգնական ժպտով: Չէր հավատում ոչնչի:

— Ծիծեռնակնե՛ր, հը՛մ... Չե՛ս խաբի... այստեղ մի գաղտնիք կա թաքնված... Ես քո գիտեցածներից չեմ... Զուր չհամառես... Ավելի լավ է խոստովանես: Միևնույն է, չես կարող մեզ հիմարացնել...

Բայց ես չգիտեի ի՞նչ խոստովանեմ, ի՞նչ ասեմ, որ հավատա ինձ: Ամեն ինչ ազնվորեն պատմել էի: Նա ինչ-որ հիվանդության, համաճարակի բացիլների մասին էր հարցնում, որոնցով իբր վարակված են մեր ծիծեռնակները, պիտի վարակեն Ստամբուլի օդն ու նրա հետ միասին՝ երկրի ժողովրդին...

Ես միայն ժպտում էի, ուսերս վեր քաշում: Մեկ էլ դեմքիս վրա մի այնպիսի ծանր հարված զգացի, որ աչքերս մթնեցին: Ատամներիցս երեքը կատիկս թռան: Բերանս լցվեց տաք արյունով:

Այդ օրից ծայր առավ մի զարհուրելի չարչարանք: Ծեծում էին, բզկտում, նորից ու նորից ստիպում խոստովանել:

Մի շաբաթ շարունակ այդպես ծեծեցին ու տանջեցին: Վերջում, երևի, իրենք էլ հոգնեցին, որ ստիպված եղան ազատ արձակել:

Գնացքը չկար: Մեծ դժվարությամբ ես կարողացա վերադառնալ:

Այստեղ հայտնի դարձավ, որ իմ մյուս ընկերները ևս նույն բախտին են արժանացել:

Ծիծեռնակներով բեռնված հաջորդ էշելոնները Ստամբուլը հրաժարվել էր ընդունել, և նրանք, ետ գալով, ստիպված էին եղել Ավստրիայի վրայով մեկնել Վենետիկ: Այստեղից էին ծիծեռնակները շարունակել իրենց աշնան չուն:

Բայց թե ի՞նչ եղան, ո՞ւր մնացին առաջին էշելոնի «ուղևորները»—ինձ համար անհայտ մնաց: Այդ օրից շատ տարիներ են անցել: Շատ ջուր է հոսել: Շատ բան է փոխվել: Բայց ամեն անգամ, ծիծեռնակ տեսնելիս, ես այն դեպքն եմ հիշում, ու մեծ քարի պես մի բան է ծանրանում սրտիս վրա. մի՞թե նրանք կես ճանապարհին մնացին, մի՞թե ոչնչացան...






№ 1 ՀՈՒՆՎԱՐ 1961 թ.



## ԱՇԽԱՐՀԻ ԱՄԵՆԱԾԵՐ ԵՎ ԱՄԵՆԱԲԱՐՁՐ ԾԱՌԵՐԸ

Աֆրիկայում աճում է մի բաոբաբ, որը մոտ հազար տարեկան է: Բարձրությունը 22 մետր է, բնի շրջագիծը՝ 47 մետր, իսկ սաղարթի շրջագիծը 145 մ.:

Կալիֆորնիայում աճում են սեկվոյաներ, որոնց բարձրությունը 150 մետր է, բնի շրջագիծը՝ 11 մետր: Սեկվոյաները մոտ 4 հազար տարեկան են:

Հնդկաստանում մի բանյան (ֆիկուս) է աճում, որը բաղկացած է 3000 մեծ և 3000 փոքր բներից: Բանյանի բարձրությունը 60 մետր է, տարիքը՝ մոտ 3000: Այդ զարմանալի ծառի ստվերի տակ կարող են տեղավորվել 7000 մարդ:

Շտաֆֆելշտեյնում (Գերմանիա) աճում է մոտ երկու հազար տարեկան մի լորենի, որի բնի շրջագիծը 16 մետրի է հասնում:

Էտնայի լանջերին (Սիցիլիա) աճում է 2000 տարեկան մի շագանակենի, որի բնի շրջագիծը 20 մետր է:

Անգլիայի Քենտ կոմսությունում աճում է երեք հազար տարեկան մի կարմրածառ: Երբ հռոմեական միապետ Հուլիոս Կեսարը նվաճել էր Բրիտանիան, կարմրածառը արդեն հզոր ու ծեր մի ծառ էր:

Լեհաստանում, Պոզնան քաղաքի մոտ աճում են երեք կաղնի, որոնց բարձրությունն է 20 մետր, բնի շրջագիծը՝ 7—9 մետր, իսկ տարիքը՝ 600—900:



## Գորտ հսկան

Պո գետի հովտում գյուղացիները գտել են արտասովոր մեծության մի գորտ: Հսկան կշռում է կես փութ և ունի կես մետր երկարություն: Ճահճագորտի կոկորդը, ունկնդիրների վկայությամբ, ավելի շատ մռնչոց է հիշեցնում, քան թե լճակների սովորական բնակիչների անմեղ շաղակրատանքը:

## ԳԵՐՁԱՅՆԸ ԳՏՆՈՒՄ Է ՈՒՌՈՒՑՔԸ

Գիտնականները վաղուց ի վեր որոնում են միջոցներ, չարորակ ուռուցքների ամենավաղաժամ հայտնաբերման համար: Որքան շուտ հայտնաբերեն ուռուցքը, այնքան հեշտ է նրա դեմ պայքարելը: Իսկ եթե ժամանակին այն չհեռացնեն, ապա օրգանիզմին սպառնում է մահացու վտանգ: Բայց հայտնաբերել ուռուցքը նրա զարգացման վաղ շրջանում, դժվար է, իսկ երբեմն էլ անհնար, նույնիսկ ռենտգենի միջոցով:

Օգնության է հասնում ուլտրաձայնը:

Հատուկ ապարատը կարողանում է գտնել ուռուցքը նույնիսկ այնտեղ, ուր անուժ են ռենտգենյան ճառագայթները:

Այս անգամ, ռենտգենյան ճառագայթների փոխարեն օրգանիզմի ներսը թափանցում են գերձայնային տատանումները, որոնք ստեղծված են հատուկ պյեզոէլեկտրական հայտնիչով: Մետաղյա սկավառակի չափերը փոխվում են նրա մակերեսի էլեկտրական լիցքերի նշանների փոփոխումից: Ահա մի քանի խոսքով պյեզոէլեկտրական էֆեկտի էությունը: Այս փոփոխումների հաճախականությունը համապատասխանում է սկավառակի լիցքերի փոփոխման հաճախականությունը: Տվյալ դեպքում տատանումները գերձայնային են:

Եվ այսպես, պյեզոհայտնիչի միջոցով ստեղծված գերձայնային տատանումները թափանցում են մարդու մարմինը: Իրենց ճանապարհին հանդիպելով ավելի խիտ միջավայրի, նրանք անդրադառնում են և ետ գալիս: Տարբեր խտության հյուսվածքներից ճառագայթները անդրադառնում են տարբեր ձևով: Իսկ ուռուցքի սահմանավորումը կապված է մարմնի խտության փոփոխման հետ: Գերձայնային ճառագայթները հայտնաբերում են գոյացած ուռուցքի սահմանները: Էկրանի վրա մենք տեսնում ենք անդրադարձման ազդանշանը: Գիտենալով նրա անցման ժամանակը, կարելի է հաշվել որտեղից է նա անդրադարձել և դրա միջոցով որոշել ուռուցքի սահմանները և նրա տարածման խորությունը:




Դուք գիտե՞ք, թե ինչպես են որոշում ծառերի տարիքը. դա բոլորովին էլ դժվար չէ. բավական է ծառը բնից սղոցել, հաշվել կտրվածքի վրա երևացող օղակաձև շերտերը և դուք կիմանաք ծառի տարիքը: Դրա պատճառն այն է, որ ծառն աճում է միայն ամռանը՝ գոյացնելով կեղևի տակ նոր բջիջների մի շերտ: Ձմռանը ծառը չի աճում, հետևապես նոր բջիջներ չեն առաջանում: Հաջորդ ամռանը գոյանում է մի նոր շերտ, և ստացվում է այնպես, որ տարիների քանակը համապատասխանում է օղակաձև շերտերի քանակին:

Նման տարեցույց օղակներ են առաջանում նաև ձկան թեփուկների վրա: Ամռանը ձուկը լավ է սնվում, որի պատճառով էլ նրա յուրաքանչյուր թեփուկը աճում է, մեծանում: Իսկ ձմռանը ձուկը գտնվելով կիսաքուն վիճակում՝ չի աճում, հետևապես նրա թեփուկն էլ չի մեծանում:

Այսպիսով ձկան վրա առաջանում են տարեցույց օղակներ: Սովորաբար ձկան մարմնի կողագծից ներքև ընկած մասի թեփուկն են դիտում խոշորացույցով և հաշվում տարիքը:

Ձկան տարիքը կարելի է որոշել նաև նրա «լսողական քարիկներով», որոնք գտնվում են գլխի երկու կողմերում ընկած խոռոչներում: Բայց կան ձկներ, որոնք տարեցույց օղակներ չունեն թեփուկների վրա, օրինակ թառափը: Բայց երբ նրա լողակներում գտնվող ճառագայթող սուր ոսկրիկը սղոցեք, դարձյալ կտրվածքի վրա մանրադիտակով կտեսնեք նրա տարեցույց օղակները: Իսկ ֆալամիդ ձկան տարեցույց օղակները գտնվում են ողների խոռոչներում:



# ՏՐԱԿՏՈՐՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ «ՏՈՒՐՆԻՐ»

Ռոստովի մարզի Հյուսիս-Կովկասյան մեքենա-փորձարկման կայանում անց են կացվում անվավոր տրակտորների միջազգային փորձարկումներ: Այդ փորձարկումների ծրագիրը արտակարգ բարդ է: Տրակտորները մրցում են դաշտային դժվար պայմաններում և փորձատեղերում: Հաղթող համարվում է այն տրակտորը, որն ունի բարձր արտադրողականություն, տնտեսում և հարմար ու հուսալի է շահագործման մեջ:

«Դաշտի տերերը» ներկայացրել են Խարկովի «ДТ—20», Վլադիմիրյան «Т—28» և Մինսկի «МТЗ—5МС», «МТЗ—7М», «МТЗ—7МС» տրակտորները:

Սակայն սովետական տրակտորներն ունեն լուրջ մրցակիցներ: Դրանք են՝ ԳԴՌ-ի «Ֆամուլուս», Հունգարիայի «И—28» և «ИЕ 28», Չեխոսլովակիայի «Զետոր—30», Լեհաստանի «Ուրսուս—25» ու ռումինական «Ումոս» տրակտորները: Եվ դրանք բոլորն էլ ժողովրդական արդյունաբերության «աստղերն» են:

Առաջին տուրում, երբ տրակտորները 200 ժամ դաշտում շրջեցին, նրանք մրցակցեցին արգելակային փորձատեղերում: Ինչպե՞ս դա կատարվեց: Մեքենան կանգնեցրին փորձատեղում: Աշխատանքի գցելով շարժիչը, հատուկ սարքերի միջոցով չափեցին նրա հզորությունը և վառելանյութի ծախսումը: Այստեղ արդեն ի հայտ եկան առաջին հաղթողները: Դրանք սովետական «Т—28» և հունգարական «И—28» տրակտորներն են, որոնք մեկ ձիու ուժի համար մեկ ժամում ծախսեցին ընդամենը 196-ական գր. վառելանյութ: Հաջորդ տուրերում յուրաքանչյուր տրակտոր պետք է 2000-ական ժամ աշխատեր դաշտային բոլոր տեսակի աշխատանքներում՝ վարի մեջ, ցանքում, հնձի ժամանակ և այլն: Ահա այդ ժամանակ էլ ի հայտ եկան մեքենայի բոլոր արժանիքները. հզորությունը, շարժունակությունը, հուսալիությունը և խնայողականությունը:

Բայց դրանցով փորձարկումները չեն վերջանա: Իրար հետ պետք է «մրցեն» առանձին հանգույցները ու մանրամասները: Եվ ինժեներները կստուգեն, թե ինչպես է դրանց վրա անդրադարձել ծանր աշխատանքը և ինչքանով են մաշվել շարժիչ մասերը:

Տրակտորների միջազգային «տուրնիրը» կվերջանա 1961 թվականին: Տուրնիրին մասնակցող երկրների ինժեներները և կոնստրուկտորները կատարում են փորձի փոխանակում, ստուգում են իրենց մեքենաների աշխատանքը: Կընտրվի այն մեքենան, որը բոլորից լավն է և կատարելագործված:

## ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ԱՏԱՄՆԵՐ ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻՆ

*ԱՄՆ-ի Նեբրասկա նահանգի անասնաբույծները նկատել էին, որ կովերի առջևի ներքին 8 ատամների մաշվածության հետևանքով նրանք խուսափում են սառը ջուր խմելուց, դադարում են արածելուց, լղարում են և բշացնում կաթնատվությունը:*



*Այն բանից հետո, երբ կովերի մաշված ատամներին դրվեցին չժանգոտվող պողպատից շապիկներ, նրանց քաշը 20 օրվա ընթացքում ավելացավ 14—16 կիլոգրամով:*

## Անսահմանության ՄԱՍԻՆ

*Անսահմանությունն ինչպե՞ս պատկերացնել: Դա մի սովորական թիվ չէ, այլ միլիոնից, միլիարդից, ամենամեծ թվից էլ մեծ: Որ ամենամեծ թիվն էլ վերցնենք, կարող ենք նրան աջից ավելացնել զրոներ՝ ավելի ևս մեծացնելով այն: Բայց դա չի լինի անսահմանություն, որովհետև ստացված թվին էլի կարող ենք անթիվ քանակությամբ զրոներ ավելացնել...*

*Որպեսզի լավ հասկանաք անսահմանությունը, մենք կառաջարկենք ձեզ մտովին պատկերացնել մի այսպիսի վիճակ. ձեր տունը անսահման քանակությամբ հյուրեր են եկել: Նրանցից յուրաքանչյուրը գլխին ունի միանման գլխարկ, որը ներս մտնելիս թողնում է նախասենյակում: Կատակով դուք երեւս գլխարկ թաքցնում եք:*

*Երեկոն վերջանում է, և հյուրերը սկսում են ցրվել:*



*Առաջին հյուրը հագնում է ոչ թե իր գլխարկը, այլ երրորդի, երկրորդն էլ չորրորդի և այլն... Ի՞նչ եք կարծում, քանի՞ հյուր կմնա առանց գլխարկի, երկու՞սը. սխալվում եք, գլխարկները կբավարարեն բոլորին: Չէ՞ որ գլխարկները անսահմանորեն շատ են. ավելի լավ համոզվելու համար՝ նայեք նկարին, գլխարկների շարքը չի վերջանում, ուրեմն բոլորին էլ կբավարարեն գլխարկները:*

*Արդեն հասկանալի է, որ եթե, ասենք՝ երկուսի տեղ հարյուր գլխարկ թաքցնեիք, հագարը, թե ավելին՝ միևնույն է, ոչ ոք առանց գլխարկի չէր մնա:*

*Գլխարկների մասին բերված օրինակը հիմնավորված է այն օրենքով, որ անսահմանությանը գումարենք, թե նրանից հանենք, անսահմանությունը բազմապատկենք, թե բաժանենք՝ մեկ է, կստանանք դարձյալ անսահմանություն:*

## „ՍՏՈՐՋՐՅԱ ԿԱՅԾԱԿՆԵՐԸ„ ԴՐՈՇՄՈՒՄ ԵՆ

Բարձրավոլտ էլեկտրական պարպումը ջրով լի անոթի մեջ առաջացնում է հարվածող ալիք, որը տարածվում է ձայնի արագությամբ: Եթե այդ ալիքը զարկվի մամլամոր վրա դրված մետաղի շերտին, ապա մետաղն ընդունում է նրա տված ձևը: Այսպես կարելի է ձև տալ այն բոլոր ամուր մետաղներին, որոնց սովորական միջոցներով ձև տալն անհնարին է:

Էլեկտրաջրային դրոշմումը մոտիկ ապագայում լայն կիրառություն կունենա:

## ԱՐՏԱՍՈՎՈՐ ՎԱՌԵԼԱՆՅՈՒԹ

Չինաստանի շատ նահանգներում կառուցված են էներգետիկ կայաններ, որոնք աշխատում են մի արտասովոր վառելանյութի միջոցով: Այդ վառելանյութն ստացվում է «թափթփուկներից»: Մեծ և փակ ավազանում կուտակում են կերակրի մնացորդներ, ցեխի տիղմ, մոլախոտեր, կենդանիների աղբ: Բակտերիական քայքայման միջոցով առաջանում է ճահճային գազ, որը և ծառայում է իբրև վառելանյութ:

Ճահճագազի անջատումից հետո քայքայվում է պարարտանյութի որակը և այն պարբերաբար տեղափոխում են գյուղական դաշտերը: Մոտիկ ժամանակներում Չինաստանում նախատեսնված է կառուցել 200 այդպիսի պարզ և էֆեկտիվ էներգետիկ կայաններ:

# Պատասխանում ենք հարցերին

*Ինձ շատ է հետաքրքրում, թե ի՞նչ է նշանակում տիեզերական ձգողականություն*

*ՕՆԻԿ ԱՍՐՅԱՆ*

*Լեռնային Ղարաբաղի Նմիշճյանի յոթնամյա դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ*

Դեռ 16-րդ դարի կեսերին լեհ մեծ գիտնական Նիկոլայ Կոպերնիկոսը տվեց մոլորակների Արեգակի շուրջը պտտման իր Արեվակենտրոն սիստեմը: Մոտավորապես կես դար հետո ավստրացի գիտնական Իոհան Կեպլերը դիտումներից ելնելով սահմանեց մոլորակների շարժման օրենքները:

Սակայն մոլորակների Արեգակի շուրջը պտտվելու պատճառը մնում էր անհայտ. այն լուծեց անգլիացի հանճարեղ գիտնական Իսահակ Նյուտոնը 17-րդ դարի վերջերին:

Նյուտոնը համառորեն աշխատում էր այն հարցի վրա, թե ինչու լուսինը պտտվելով իր ուղեծրով Երկրի շուրջը, չի ընկնում նրա վրա կամ հեռանում նրանից: Եվ ինչու՞ այդ նույն ժամանակ «երկրային իրերը» նետելիս նորից անպայման գետին են ընկնում: Նյուտոնը իր ուսումնասիրություններից եկավ այն համոզմանը, որ տիեզերքում գտնվող բոլոր մարմինների միջև գոյություն ունի փոխադարձ ձգողություն: Այդ օրենքը կոչվում է համատիեզերական ձգողության օրենք: Ինչպե՞ս հասկանալ այդ:

Իրականում ամեն մի մարմին իրեն շրջապատող տարածության մեջ առաջացնում է հատուկ ձգողության դաշտ՝ որը իրենից ներկայացնում է յուրատեսակ մատերիա: Մարմինների փոխադարձ ձգողությունը առաջանում է նրանց ձգողական դաշտերի փոխազդեցության հետևանքով:

Երկրագնդի վրա մարմինների փոխադարձ ձգողության ուժերը չափազանց չնչին են. Երկրագնդի կողմից այդ մարմինները ձգելու համեմատությամբ, այդ պատճառով սովորական պայմաններում աննկատելի են մեզ համար:

Սակայն շատ սուրբ փորձերի միջոցով հնարավոր եղավ հայտնաբերել և նույնիսկ չափել այդ ուժերը:

*ՀԱԿՈԲ ՉԱՔՄԻՇՅԱՆ*

## ՄԵՔԵՆԱՆ ՍՈՎՈՐՈՒՄ Է ԱՅԲՈՒԲԵՆԸ

*Ամերիկյան գիտնականները վերջերս ցուցադրել են մի հետաքրքիր մաթեմատիկական մեքենա, որը կարող է ճանաչել այբուբենի տառերը:*

*Մեքենային տառաճանաչություն են սովորեցնում այնպես, ինչպես դպրոցական երեխային: «Ուսուցիչը» մեքենայի ֆոտոաչքի առաջ դնում է տառի պատկերը: Մեքենան այդ պատկերը «հիշում է»: Բայց պատահում է նաև, որ աշխատանքի ընթացքում մեքենան սխալվում է, այդ ժամանակ «ուսուցիչը» էլեկտրոնային դեկը օգտագործելով, ուղղում է նրան:*

*Գիտնականները կարծում են, որ հետագայում մեքենան կկարողանա կարդալ ոչ միայն տպագիր, այլև ձեռագիր տառերը:*

*Մեքենան կարելի է օգտագործել թարգմանիչ մեքենաների հետ: «Կարդալով» բնագիր տեքստը, տառաճանաչ մեքենան այն կհաղորդի թարգմանիչ մեքենային և ամենակարճ ժամանակամիջոցում հնարավոր կլինի թարգմանել բավականին ծավալուն գրքեր:*

## ՔԱՌԱՍՄԱՊԱՏ ՈՒՂՏԸ




Արաբական հավատալիքի համաձայն, չորս հարյուր տարին մեկ անգամ ծնվում է քառասմապատ մի ուղտ, որ երջանկություն է բերում տիրոջը:

Վերջերս արաբական քաղաքներից մեկում մի մարդ վաճառքի էր դուրս բերել իր քառասմապատ ուղտը: Երջանկություն որոնողները իսկույն շրջապատեցին ուղտի տիրոջը, որը տեսնելով այդ, ուղտի գինը բարձրացրեց ուզած չափով:

Վերջապես գործարքը կնքվեց և ուղտը վաճառվեց:

Արդյոք քառասմապատ ուղտը երջանկություն կբերի՞ նոր ընկերոջը, թե ոչ, այդ չգիտենք:

Առայժմ իրեն լիովին երջանիկ է զգում ուղտի նախկին տերը, որ առասպելական գնով վաճառեց իր «երջանկության թալիսմանը»:

## ՆՈՐ ՏՈՊՐԱԿՆԵՐՈՒՄ

*«Տվեք ինձ երկու տոպրակ կաթ». այս դարձվածքը շուտով սովորական կդառնա մեր լսողության համար:*

*Համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի աշխատողները վերջերս ստեղծել են կաթը թղթե տոպրակների մեջ լցնող ավտոմատ մի հարմարանք:*

*...Մեքենավարը սեղմում է կոճակը: Երկու տարբեր ռուլոններից դուրս են սողում թղթե և պոլիէթիլենի ժապավենները: Մի հատուկ հարմարանք այդ երկու ժապավենները միացնելով իրար, պատրաստում է անվերջ երկարող մի խողովակ: Ըստ որում, խողովակի ներսի պատը լինում է պոլիէթիլենի անջրաթափանց շերտից, իսկ արտաքին պատը թղթից: Մի ուրիշ մեխանիզմ խողովակը լցնում է կաթով, իսկ էլեկտրական կտրիչը կտրատում է այդ խողովակից տոպրակներ, նախապես միացնելով կտրված տեղերը:*

*Այս նոր ավտոմատը մի ժամում պատրաստում է երեք հազար վեց հարյուր հատ կես լիտրանոց կաթի տոպրակներ: Թղթե տոպրակները տեղափոխման համար շատ հարմար են. նրանք թեթև են, էժան և չեն կոտրվում: Նրանց մեջ օդ չի անցնում, որի պատճառով էլ կաթը պահպանվում է երկար, քան շշերում:*

## Գիտե՞ք որ

...Մթության մեջ մարդը կարող է մոմի բոցը նկատել ավելի քան մեկ կիլոմետր տարածության վրա:

Մարդու տեսողությունը նույնքան սուր է գիշերը, որքան ցերեկը, բայց չորս անգամ թույլ է, քան կատվինը: Մինչդեռ ցերեկով կատվի տեսողությունը հինգ անգամ թույլ է, քան մարդունը:

...Ինչո՞ւ է «լալիս» կոկորդիլոսը: Գոյություն ունի մի հավատալիք, թե գիշատիչը դա անում է զոհի նկատմամբ կեղծ կարեկցությունից: Այդ հավատալիքի վրա է հենված «կոկորդիլոսի արցունքներ» ասացվածքը: Վերջերս երկու գիտնական կենսաբաններ՝ շվեդացի Ֆենեն և ամերիկացի Նիլսոնը հերքեցին կոկորդիլոսների կեղծավորության մասին կասկածները: Նրանք հաստատեցին, որ արցունքների հետ միասին կոկորդիլոսները ազատվում են իրենց մարմնի մեջ եղած աղի ավելցուկներից:

Ուզում եմ ամեն ինչ ԻՄԱՆԱԼ էջ 3

## ՖՈՏՈՐԱԶՄԱՑՆՈՂ ԼԱԲՈՐԱՆՏ

Շատ հաճախ հարկ է լինում արյան անալիզ կատարել: Արյան փոփոխման միջոցով կարելի է դատել զանազան հիվանդությունների մասին: Այդ է դիագնոստիկայի միջոցը: Բայց ինչպե՞ս են սովորաբար կատարում արյան անալիզը: Լաբորանտը նայում է մանրադիտակին, հաշվելով արյան սպիտակ և կարմիր գնդիկների քանակը: Այդ հարմար չէ, և երբեմն հաշվումները սխալ են լինում:

Ուրեմն պետք է օգնության հասնի տեխնիկան: Վերջերս մեր գիտնականները ստեղծեցին այնպիսի մի ապարատ, որը մեկընդմիշտ կազատի բուժաշխատողներին տանջալի աշխատանքից:

Այդ ապարատը-էլեկտրոնային մեքենան է: Ահա, թե ինչպես է աշխատում նա: Սովորական ձևով պատրաստված արյան նմուշը տեղավորում են փոքրիկ մանրադիտակի օբյեկտիվի և լույսի աղբյուրի միջև: Արյունոտ ապակին հատուկ հարմարանքի միջոցով տեղափոխվում է մանրադիտակի առանցքի տակ: Լինզաները (տեսապակիները) մեծացնում են պատկերը և փոխանցում այն, այսպես կոչված ֆոտոբազմացնողի վրա: Լուսային փնջերը նպաստում են էլեկտրոնային փնջերի երևան գալուն: Երբ մանրադիտակի և ֆոտոբազմացնողի միջև ընկած ճեղքվածքում երևում է կարմիր կամ սպիտակ արյան գնդիկի պատկերը, առաջանում է էլեկտրական իմպուլս: Իմպուլսները ուժեղանում են և հաշվվում են հատուկ հաշվիչով: Ճշգրիտ լինելու համար, հաշվումը կատարվում է մի քանի անգամ: Եվ ահա մի քանի րոպեում արյան անալիզը պատրաստ է:

## ԹԵ ԻՆՉՊԵՍ ԾՆՎԵՑ ԿՂԶԻՆ

Էկվադորի մի քանի բնակիչներ ականատես եղան մի հետաքրքիր երևույթի: Նրանց աչքերի առաջ Խաղաղ օվկիանոսում՝ Կարակեզյան ծոցից հյուսիս մի նոր կղզի առաջացավ:

Հանկարծ ուժեղ դղրդյուն լսվեց, գետինը տարուբերվեց մարդկանց ոտքերի տակ և օվկիանոսի փոթորկված ջրերի միջից երևաց կղզին: Մի քանի րոպեի ընթացքում ցամաքի զանգվածը բարձրացավ ջրից վեր, հասնելով ավելի քան մեկ և կես կիլոմետր բարձրության և 200 մետր լայնության: Դրան անմիջապես հաջորդեց երկրաշարժի հզոր ալիքը, որը տարածվեց Հարավային Ամերիկայի ամբողջ Խաղաղօվկիանոսյան ափի երկարությամբ:

## ՀԵՌՈՒՍՏԱՑՈՒՅՑԱՅԻՆ ՄԱՆՐԱԴԻՏԱԿ

Սովորական հեռուստացույցային էկրանի վրա մենք տեսնում ենք ինչ-որ տարօրինակ, անհասկանալի նկար: Առաջին հայացքից նա հիշեցնում է լուսնի մակերևույթը՝ նկարահանված ուժեղ հեռադիտակի միջոցով: Միկրոբիոլոգիայի գաղտնիքներով չհետաքրքրվող մարդու համար դժվար է կռահել, որ դա կենդանի հյուսվածքի կտրվածք է, որի խոշորացած պատկերը մանրադիտակի միջով հաղորդվում է նրան միացված հեռուստացույցին և գծագրվում էկրանի վրա: Այս սարքավորումը օգնում է բժիշկներին և կենսաբաններին՝ հաշվել մեկուսացված վանդակների քանակը, գնահատել նրանց չափերը, նայել, ինչպես են նրանք լուսավորվում տարբեր խառնվածքների ազդեցության տակ:

## ԾԱՌԵՐՆ ՕԳՆՈՒՄ ԵՆ ՄԵԶ

Անտառում դժվար է գտնել ճանապարհը, որոշել նրա հյուսիսային և հարավային կողմերն առանց կողմնացույցի: Սակայն դա առաջին հայացքից է այդպես թվում: Երեխանե՛ր, եթե դուք լավ դիտեք բնությունը, ապա կողմնորոշվելու համար ձեզ օգնության կգան ծառերը՝ սոճին, գիհին, կեչին:

Այդ բույսերը շատ զգայուն են ջերմության և լույսի նկատմամբ: Նրանք իրենց ճյուղերն ու տերևները ուղղում են արևի կողմը: Բացի այդ սոճու և գիհու բնի հյուսիսային կողմի շերտերը խոնավության պատճառով մուգ գույն են ունենում, իսկ հարավայինը՝ բաց: Հատկապես հեշտ է կողմնորոշվել սոճու բնի միջոցով. հյուսիսային կողմում կեղևը ավելի հաստ է և տարածվում է մինչև սոճու բնի բարձրադիր մասերը: Անձրևի ժամանակով կեղևվում հաճախ բավական ջուր է կուտակվում, նա ուռչում և երկար ժամանակ չի չորանում, հենց դրանով էլ կարելի է որոշել ճանապարհի հյուսիսային կողմը: Ուշու բունը հարավային կողմում մաքուր է, հարթ, ունի բաց գույն, իսկ հյուսիսային կողմում հակառակը: Ջերմության հետևանքով այդ ծառերի հարավային մասում ավելի շատ խեժ է կուտակվում: Մրջյուններն էլ փնտրում են արևի ջերմությունը և բույն են դնում ծառի հարավային կողմում, իսկ քարաքոսերն ու սունկերը խոնավություն են սիրում և մեծ մասամբ աճում են ծառերի հյուսիսային մասում:

Եվ այսպես լավ դիտելով բնությունը, առանց կողմնացույցի կարելի է կողմնորոշվել նույնիսկ ամենախիտ անտառում և չմոլորվել:

## ՍԱՐԵՐԸ... ԱՃՈՒՄ ԵՆ

Երբ ասում են՝ աճում է ծառը, խոտը, ցանքսերը, ոչ ոք չի զարմանում: Բայց եթե ասես, որ աճում են սարերը, շատերը կզարմանան: Ընդհանրապես կարծում են, որ սարերը միանգամից «աճել են» շատ վաղուց և այդպես էլ մնացել են դարեր շարունակ:

Բայց վերջերս հայտնաբերվեց, որ սկսել են «մեծանալ» աճել և այն էլ շատ արագ, Հիմալայների աշխարհի մեծագույն լեռնաշղթաներից մեկի դարավոր գագաթները: 1955 թ. ուժեղ երկրաշարժից հետո Հիմալայան լեռների գագաթները բարձրացել են 30 մետրի չափով: Տարվա մեջ նրանք աճում են 5—6 մետր:

Հիմալայների բոլոր գագաթները, որոնք ժամանակին հաղթահարվել են ալպինիստների կողմից, այժմ պետք է մեկ անգամ ևս հաղթահարել:

## ԴԱՇՏԱՅԻՆ ՔԻՄԻԱԿԱՆ ԼԱԲՈՐԱՏՈՐԻԱ

Գիտնականները վաղուց են նկատել, որ երբ բույսերը կարիք են զգում այս կամ այն սննդարար նյութի, դա ամենից առաջ երևում է նրանց արտաքին տեսքից։

Ֆոսֆորի սակավությունից տերևների ծայրերը ոլորվում են, իսկ կենտրոններում երևան են գալիս մանուշակագույն և կարմրավուն կետեր։ Բույ-



սըն ամբողջովին դառնում է մուգ-կանաչ։ Եթե հողի մեջ քիչ է մագնիումը, բույսն ընդունում է բաց-կանաչավուն գույն, իսկ տերևների վրա առաջանում են սպիտակ, դեղին, մանուշակագույն կետեր։

Առաջին հայացքից թվում է, թե հասարակ բան է. կարելի է նայել բույսերին և որոշել, թե ինչ սննդարար նյութ է հարկավոր։ Բայց իրականում այդպես չէ։ Նախ՝ արտաքին տեսքից ճիշտ որոշել կարող են միայն փորձված մասնագետները։ Եվ երկրորդ՝ սպասել, մինչև բույսի վրա երևան գան այդ նշանները, այնքան էլ ձեռնտու չէ. բույսը կարող է փչանալ։

Որպեսզի նախապես և արագ հայտնաբերվի բույսի պահանջը, սովետական գիտնական Կ. Պ. Մագնիցկին ստեղծել է հատուկ գործիք, որը կոչվում է «Մագնիցկու պայուսակ»։ Այդ հարմարանքի միջոցով ժամանակ առ ժամանակ ստուգում են բույսերի բջջահյութի քիմիական բաղադրությունը։ Այդ անալիզը կատարվում է դաշտում, 10—15 րոպեի ընթացքում։

«Մագնիցկու պայուսակը» մի փոքր արկղ է, որի մեջ տեղավորված են ազոտի, ֆոսֆորի, կալիումի, մագնիումի, քլորի ռեակտիվները (հակազդակ նյութեր) և մի քանի օժանդակ սարքեր։

## ՕՁԵՐԸ ԼՍՈՒՄ ԵՆ ԼԵԶՎՈՎ ԵՎ ԿՐՈՒՄ ԵՆ ԱԿՆՈՑՆԵՐ

Օձերը ականջ չունեն և ձայնային տատանումները ընդունում են լեզվով։

Սովորական օձերը ակնոցներ են կրում և մինչև կյանքի վերջը մի քանի անգամ փոխում են դրանք։ Օձերի աչքերը չեն ծածկվում շարժվող անթափանց կոպերով, ինչպես մյուս կենդանիների մոտ է, այլ ունեն թափանցիկ կոպեր, որոնք կըպած են ակնախոռոչներին այնպես, ինչպես մարդկանց ակնոցների ապակիները՝ աղեղնակին։ Երբ մոտենում են կաշին փոխելու օրերը, այդ «ակ-




ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ

Մեր նոր սերունդը երջանիկ է։

Շատ սուր-վարակիչ հիվանդություններ, որոնք երկար դարեր ոչնչացրել են մարդկանց, այսօր դարձել են հազվագյուտ։ Այդ հիվանդություններին հաղթել են մարդիկ, բայց չկարծեք, թե հաղթանակը հեշտ է եղել և հանգիստ։ Նրանց դեմ կռվելու համար գիտնականներն իրենց կյանքն են զոհաբերել։

Ահա մարդկային այդպիսի սխրագործություններից մի քանիսը։

### ՄԵՉՆԻԿՈՎԻ ՍԽՐԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ

Ո՞վ չի լսել ռուս հանճարեղ գիտնական Իլյա Մեչնիկովի անունը։

Նա գտավ, որ օրգանիզմում կան բջիջներ, որոնք լափում են մանրէներին։ Նա զարգացրեց ու լրիվ ապացուցեց, որ կան հիվանդություններ, ինչպես օրինակ՝ կարմրուկը, երբ մարդը մի անգամ հիվանդանում է, ապա ամբողջ կյանքում այլևս չի հիվանդանում, այսինքն ձեռք է բերում պաշտպանական մի հատկություն՝ որը կոչվում է իմունիտետ։

Այն տարիներին, երբ ապրում և գործում էր Իլյա Մեչնիկովը, տարածված էր խոլերա հիվանդությունը, որն ուղղակի «հնձում էր» մարդկանց։ Գիտության առաջ ծառացավ այսպիսի մի հարց, թե խոլերայով հիվանդանալուց հետո մարդը կարո՞ղ է ձեռք բերել իմունիտետ, որ նորից չհիվանդանա։

Հարցը կարևոր է, բայց ինչպես պարզաբանել և գիտականորեն հիմնավորել։

Եվ ահա Մեչնիկովի մեջ ծագում է մի որոշում. «Խմել խոլերայի մանրէներով վարակված լուծույթ»։

— Եթե հիվանդանամ, ապա ձեզ մանրամասն կպատմեմ հիվանդության բոլոր նշանների մասին, իսկ դուք կգրեք,— ասաց նա իր աշակերտներին,

նոցները» աղոտանում են, և օձերի տեսողությունը վատանում է։ Կաշեփոխության ժամանակ օձերը դեն են նետում իրենց ամբողջ շապիկը՝ այդ յուրատեսակ ակնոցների հետ միասին։ Հետագայում առաջ են գալիս նոր կոպեր. բոլորովին մաքուր ու թափանցիկ։

## ԳԻՏԵ՞Ք ՈՐ...

...Գոյություն ունի թթու գետ։ Այդ գետի ջուրն այնքան թթու է, որ այնտեղ ոչ մի տեսակի ձուկ չի կարող ապրել, և խմելու համար պիտանի չէ։ Այդ գետը անցնում է Կոլումբիայով և կոչվում է Ռիո-Վինեգրե։ Ջրի թթու լինելը գիտնականները բացատրում են նրանով, որ գետի հունը գտնվում է գործող հրաբուխի վայրում։

...Բնության մեջ գոյություն ունի 1330 տեսակի ջուր։ Նրանք միմյանցից տարբերվում են թե՛ ծագմամբ (անձրևային, ստորգետնյա, թարմ և հնացած ձյան և այլն) և թե՛ իրենց մեջ պարունակող նյութերի բնույթով ու քանակով։

...Վարունգը մշտապես 1—2 աստիճան սառն է լինում իրեն շրջապատող օդից։

...Մեկ հեկտար վարելահողում կա 133 հազար անձրևաորդ։ Սրանք օրվա 24 ժամն էլ աշխատում են. փխրեցնում են հողը, խառնում և պարարտացնում։ Մանրակրկիտ հաշվումները ցույց են տվել, որ տասը հազար անձրևաորդն ավելի շատ հող է «մշակում», քան մեկ ձին։

...Արևելյան Ալժիրում գոյություն ունի բնական խոհանոց։ Քարե հսկայական հնոց հիշեցնող աղբյուրում անվերջ եռում է ջուրը։ Միայն հարկավոր է միսն թել կապել և իջեցնել այնտեղ։ Մի քանի րոպեից հետո միսը եփած կլինի։ Աղ պետք չէ ցանել, որովհետև ջուրն իր մեջ պարունակում է բավարար քանակությամբ կերակրի աղ։

...Կայծակը կարող է նույն տեղը խփել մի քանի անգամ։ Կայծակի հոսանքի լարվածությունը միջին հաշվով հասնում է 100 միլիոն վոլտի։

...Էսկիմոսների մոտ նոր տարին սկսվում է այն օրվանից, երբ գալիս է առաջին ձյունը։

...Ընձուղտի ոչ միայն վիզն է երկար, այլև լեզուն, որ հասնում է 60 սանտիմետրի։



եթե մահանամ, դուք կշարունակեք այս գործը։

Չնայած իր աշակերտների և ընկերների առարկությանը, Մեչնիկովը խմեց մահաբեր թույնը։

Այս դեպքը կատարվեց ֆրանսիացի մեծ գիտնական Լուի Պաստյորի լաբորատորիայում։

— Դուք այդ մասին ոչինչ չհայտնեք Լուի Պաստյորին,—խնդրեց նա իր աշակերտներին,—եթե նա իմանա, կարգելի այս փորձը կատարել. Նա միակ մարդն է, որի խոսքը չեմ կարող չկատարել։

Բարեբախտաբար Մեչնիկովը չհիվանդացավ։ Նա կրկնեց այդ սարսափելի փորձը մի քանի անգամ, բայց չհիվանդացավ։

Մեչնիկովը անձնվիրաբար մի քանի անգամ ցանկացավ իր կյանքը զոհել՝ մարդկանց կյանքը փրկելու համար։



## ԽԻԶԱԽ ԳԻՏՆԱԿԱՆԸ

Մինչև Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան, Միջին Ասիայի ժողովուրդները՝ ուզբեկները, ղազախները, տաջիկները հաճախ տառապում էին մի ահավոր հիվանդությամբ, որ կոչվում էր հետադարձ տիֆ։ (Հետադարձ է կոչվում, որովհետև մի քանի օր տևող ուժեղ տենդից հետո, երբ հիվանդը առողջացած է երևում, հանկարծ նորից է հիվանդանում)։ «Ինչի՞ց է տարածվում այս մահաբեր տենդը»—երկար ժամանակ մտածում էին մարդիկ։ Բայց ոչինչ անել չէին կարողանում։

Եկավ ազատարար հոկտեմբերը, անապատ եկան նոր, սովետական մարդիկ։ Նրանց մեջ էր ռուս երիտասարդ բժիշկ Նիկոլայ Լատիշևը։

1925 թվականի ամռանը հետադարձ տիֆը անապատի ավազոտ քամու նման տարածվում էր ամբողջ Միջին Ասիայում։

*...Ավստրալիայում կան կենգուրուներ, որոնք ապրում են ծառերի վրա և երբեք գետին չեն իջնում:*

*...Աշխարհում ամենաարագ վազողը ջայլամն է: Նա կարող է վազել մեկ ժամում 120 կիլոմետր արագությամբ: Բայց այդպիսի բարձր արագությամբ կարող է վազել միայն մեկ րոպե: Վազող ջայլամի ոտքերն այնպես արագ են շարժվում, որ նայողին թվում են մշուշոտ կետեր:*

*...Թռչող ճանճը մեկ վայրկյանում թևերը թափահարում է 330 անգամ, իսկ թիթեռը՝ 2:*

*...Բոլոր գորտերը գիշատիչ են. մեծերն ուտում են փոքրերին:*

*...Որոտը լսելի է ոչ ավել, քան 25 կիլոմետր հեռավորության վրա:*

*...Բարակ հաղորդալարերը միացնելով անասունների աչքերի ներվաբջիջներին, գիտնականները պարզել են, որ աչքը էլեկտրականություն է արտադրում: Բջիջների արտադրած այդ էլեկտրական հոսանքը առաջ է գալիս լույսի ազդեցության շնորհիվ:*

*...Դուք, երևի, հաճախ եք լսել ու կարդացել, որ կատվի մեջքը ձեռքով շփելիս առաջ է գալիս էլեկտրական հոսանք: Բայց գիտե՞ք, թե ինչ ուժ ունի այդ հոսանքը: Արտասահմանյան մի գիտնական որոշեց լուծել այդ հարցը: Պարզվեց, որ 15 վատանոց մեկ էլեկտրալամպ վառելու համար պետք է միաժամանակ շփել մեկ և կես միլիարդ կատվի մեջք:*



# ՍԼՈՒԽՈՎՅԱՆ ՊԱՏՈՒՀԱՆՆԵՐ

*ԼԵՎՈՆ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ*
*(Ինժեներ)*

Ձեզանից ո՞վ չի մագլցել տանիք՝ ձեղնահարկի պատուհաններից: Դժվար թե մեկը լինի, որ բացասական պատասխան տա: Շատ հոգսեր են կապված կտուր բարձրանալու անհրաժեշտության հետ՝ անտենա կանգնեցնել, տեղավորել սարյակների տնակը, աղավնիներ թռցնել...

Պատուհանները, որոնք շինվում են ձեղնահարկում, կոչվում են սլուխովյան: Այդ արտահայտությունը շատ է տարածված շինարարների մեջ: Ձեղնահարկի պատուհանները ոչ թե երեխաների չարաճճիությունների համար են, այլ ավելի լուրջ նպատակների՝ հրդեհը հանգցնելու, ձեղնահարկի լուսավորման և օդափոխության համար:

Բայց ինչո՞ւ են ձեղնահարկի պատուհանները կոչվում Սլուխովյան:

Ահա թե ինչ են պատմում հին ռուսական շինարարները:

1815 թվականին էր: Նապոլեոնի զորքերը ջախջախելուց հետո ռուսական բանակը մտավ Փարիզ: Հենց որ այդ լուրը հասավ Մոսկվա, քաղաքի բնակիչները ցանկություն հայտնեցին արժանավայել դիմավորել հաղթողներին: Որոշված էր Մոսկվայում կառուցել մի մեծ շենք, առանց ներքին սյու-

Երկար ուսումնասիրություններից հետո Լատիշևը պարզեց, որ հիվանդություն տարածողները անապատային վայրերում ապրող միջատներն են, որոնք կոչվում են տզեր:

Բայց ինչպե՞ս ապացուցել, ու՞մ վրա փորձեր կատարել: Եվ նրա գլխում ծագում է մի միտք. իսկ ինչու՞ չփորձել հենց իր վրա: Նա վերցնում և իրեն հետադարձ տիֆով հիվանդի արյուն է սրսկում:

Բժիշկ Նիկոլայ Լատիշևը գիտակցաբար այդ մասին ոչ ոքի չի հայտնում. «Եթե բժիշկներն իմանան, թե ինչով եմ ես հիվանդ, ապա կարող են ինձ բուժել, իսկ եթե արագ բուժվեմ, ապա չեմ զգա հիվանդությունից առաջացած բոլոր բարդությունները. չէ, ավելի լավ է, որ ինձ ոչ ոք չխանգարի,—



մտածում էր նա:

Հիվանդությունը քանի գնում ուժեղանում էր.

«Գաղտնապահություն, գաղտնապահություն, հանկարծ ջերմության մեջ կարող եմ զառանցել և ամեն ինչ կը-

պարզվի»—նորից ու նորից մտածում էր բժիշկը:

Եվ ահա մի օր, երբ հետադարձ տիֆը արդեն թուլացրել էր նրա օրգանիզմը, նա իր գաղտնիքը բացեց: Ընկերները զարմացել էին: Միաժամանակ նրանք ափսոսում էին, քանի որ նրան փրկելն արդեն անհնարին էր:

Մի գիշեր, երբ հիվանդը մի քիչ գիտակցության եկավ, բռնեց գթության քրոջ ձեռքը և կամաց ասաց.

— Ես մեռնում եմ, բայց երջանիկ եմ, որ լրիվ պարզվեց հետադարձ տիֆի գաղտնիքը:

Բժիշկ Նիկոլայ Լատիշևը իր կյանքի գնով գտավ հետադարձ տիֆի առաջացման պատճառը:

Ի պատիվ անձնազոհ բժշկի, այդ հիվանդությունը կոչեցին նրա անվամբ:

ների, ծածկած խաղասպարեզի նման և այնտեղ անցկացնել միապետ Ալեքսանդրի հանդիպման, ինչպես նաև հռչակավոր մարտիկների շքերթի արարողությունները:

Շինարարության վրա աշխատանքը եռում էր: Հաղթողների շուտափույթ վերադարձի մասին ստացված լուրը շինարարներին տալիս էր յուրահատուկ ուժ: Ամեն ինչ լավ էր գնում: 1817 թվականի գարնանը, երբ հայտնեցին, որ հաղթական բանակի զորամասերը դուրս են եկել Սմոլենսկից, շինարարության ղեկավարները հրամայեցին ներկած պատերի ու առաստաղի չորացումը արագացնելու համար դնել ժամանակավոր վառարաններ:

Եվ հանկարծ... տեղի ունեցավ ամոթալի մի պատահար, խայտառակություն ամբողջ Ռուսաստանով մեկ: Փայտե կառուցվածքները, որոնք պատրաստել էին վարպետ ատաղձագործները՝ կախվեցին: Ամբողջ առաստաղը այնպես էր իջել, որ այդ շենքում արարողությունն անցկացնելու մասին խոսք լինել չէր կարող:

Սկսեցին չափել-ձևել, թե ինչպե՞ս շուտափույթ վերացնեն այդ սոսկալի արատը: Բոլոր մասնագետները միաձայն հայտնում էին, որ հարկավոր է ամբողջ տանիքը քանդել, փայտյա կառուցվածքները նորից պատրաստել, իսկ այդ վերափոխման համար ավելի քան մեկ ամիս էր անհրաժեշտ: Բոլորն էլ, իհարկե, տխրեցին, հանդիպման հանդիսավորությունը տապալվում էր, հսկայական աշխատանքը՝ կորչում:

Այդ ժամանակ ռյազանցի ատաղձագործ Ալեքսեյ Սլուխովը հայտնեց, որ ինքն իր արտելի հետ միասին կարող է անմիջապես ուղղել: Նրա վրա ծիծաղեցին միայն... Բայց երբ





պարզվեց, որ գործի ժամանմանը մնացել է մեկ օր՝ որոշեցին փորձել Սլուխովի առաջարկը:

Ատաղձագործներն արագ բարձրացան շենքի տանիքը: Վառարանները դեռ վառվում էին շինության մեջ: Սլուխովի արտելականները տանիքի վրա մի՛ քանի անցք բացեցին: Մեկ էլ մի ուժեղ սուլոց լսվեց: Տաք օդը այդ անցքերից դուրս էր պրծնում: Ատաղձագործները անցքերի վրա պատուհաններ պատրաստեցին: Կառուցվածքներն ուղղվեցին, առաստաղը նորից ստացավ իր նախկին հարթությունը: Սլուխովը գլխի էր ընկել, որ ձեղնահարկային շինությունը՝ ներսից ու դրսից խցանվելով, ներկից ու սվաղից, դարձել է մի փակ տարածություն: Երբ սկսվել էր ջեռուցումը, ձեղնահարկի օդը տաքացել և լայնանալով, ճնշել էր առաստաղը:

Այդ ժամանակվանից ռուսական շինարարները ձեղնահարկային պատուհանները սկսեցին կոչել «Սլուխովյան»:

Շենքը, որի մասին խոսվեց, մինչև այսօր էլ զարդարում է Մոսկվան: Դա հռչակավոր Մանեժն է, որ կառուցվել է ինժեներ Ա. Ա. Բետանկուրի նախագծով և ղեկավարությամբ: Իր գոյության 143 տարվա ընթացքում շենքը մի քանի անգամ ենթարկվել է վերակառուցման: Սովետական կառավարության որոշմամբ՝ Մանեժը դարձավ կենտրոնական ցուցահանդեսային դահլիճ: Այստեղ անց են կացվում սովետական արվեստի, ժողովրդական դեմոկրատիայի երկրների հաջողությունների ստուգատեսները:

## ԴԵՂԻՆ ՏԵՆԴ

Ամերիկայի բազմաթիվ շրջաններում, Կուբայում և օվկիանոսի մի շարք այլ կղզիներում հարյուր տարի առաջ տարածվեց մի հիվանդություն, որը կոչվեց դեղին տենդ:

Ով կարդացել է անգլիացի գրող Չարլզ Դիկկենսի «Մարտին Չեզվլիտի արկածները» գիրքը, գիտե, որ դեղին տենդի պատճառով Ամերիկայում հսկայական տարածություններ ամայացել և դարձել էին անմարդաբնակ:

Շատ ենթադրություններ կային մահաբեր տենդի մասին, բայց հազվագյուտ մարդիկ էին ցանկանում գնալ այն վայրերը, որտեղ թագավորում էր այդ անտեսանելի գազանը:



Եվ ահա ամերիկացի Վալտեր Ռիդը 1900 թվականին իր հետ վերցնելով մի խումբ ազնիվ և աշխատասեր մարդկանց, գնաց այդ արհավիրքի դեմ

Անմարդաբնակ անտառի եզրին, ուր ճահիճներ էին և անանցանելի եղեգնուտ, ուր առյուծների, վագրերի, օձերի հետ վխտում էին միլիոնավոր միջատներ ու մրջյուններ, ուր թռչում էին մոծակների բազմահազար պարսերը, Վալտեր Ռիդը բացեց իր լաբորատորիան:

— Մարդկությանը դեղին տենդից փրկելու համար առաջինը մենք պետք է վտանգի տակ դնենք մեր կյանքը,— ասաց Վալտեր Ռիդը,—իմ կարծիքով դեղին տենդը տարածում են մոծակները: Սակայն կարծիքը դեռ գիտական ապացույց չէ: Եկեք փորձենք հենց ինձ վրա: Այն մոծակը, որը ծծել է հիվանդի արյունը և արդեն վարակվել է դեղին տենդով, թող հետո խայթի ինձ: Եթե ես հիվանդացա, նշանակում է իմ կարծիքը գիտություն է, եթե չհիվանդացա, ապա պետք է

# ՄԱՅՐ ԿԱՊԻԿԸ

ԱՂԱՍԻ ԹՈՒՐԱՋՅԱՆ

Այդ տարին մենք ապրում էինք Ամերիկայի Բոստոն քաղաքում։

Հաճախ, իմ խնդրանքով, հայրիկիս հետ գազանանոց էինք գնում ու երկար կանգ առնում կապիկների վանդակի մոտ։

Անչափ հետաքրքիր էր տեսնել, թե ինչպես մայր կապիկը և իր ձագուկը ծիծաղելի շարժումներ էին անում, գրավում այցելուների ուշադրությունը՝ նրանցից արևածաղիկ կամ զանազան քաղցրեղեններ ստանալու համար։

Մի անգամ, երբ հայրիկիս հետ կրկին գնացել էինք գազանանոց և հափշտակված դիտում էինք մոր ու ձագի ակրոբատիկ շարժումները, հանկարծ իմ գլխում մի միտք ծագեց՝ ինչ գնով էլ լինի, տիրանալ ձագերին, և սկսեցի խնդրել հայրիկիս.

— Գնիր ինձ համար այն փոքրիկ կապիկը, հայրիկ, ես ուզում եմ նա ինձ մոտ լինի։

Հայրս սկզբում բարկացավ թե՝ ո՞վ է նրան խնամողը, ես նրան հավատացրի, որ ես կխնամեմ։ Երևում էր, որ հայրս էլ անտարբեր չէ դեպի «ակրոբատիստները», քիչ մտածելուց հետո ասաց.

— Լավ, որդիս, կգնեմ։

Գազանանոցի տերը՝ հաստ փորով, գեր երեսով մի մարդ էր։ Նա մի խորամանկ հայացք գցելով մեզ վրա, ասաց.

— Այս կապիկները ցեղական են, հատկապես, փոքրիկի մայրը. նա մարդու խելք ունի։—Եվ ոտքից հանելով իր կոշիկը, մի կտոր շորի հետ, տվեց կապիկին.

— Հապա, մաքրի՛ր,— հրամայական տոնով ասաց նա։

Մայր կապիկը անմիջապես վերցրեց այն և մեծ եռանդով սկսեց մաքրել և, լավ փայլեցնելով, տվեց տիրոջը։

— Նա կարող է նստել սեղանի շուրջը և պա-



տառաքաղով կամ գդալով ճաշել, եթե չեք հավատում...

— Ոչ, հավատում եմ,— ասաց հայրս,— բայց տղաս ձագուկին է ուզում։

— Ես գիտեմ, որ դուք ձագուկին եք ուզում,— ժպտալով ասաց հաստափորը,— այսպիսի խելոք կապիկի ձագն էլ իր մոր նման խելոք կլինի. դրա համար նրա արժեքը երեսուն դոլլար է։

Հայրս առանց առարկելու մեկնեց դրամը։ Հաստափորը ագահությամբ դրամը թաքցրեց գրպանում և բաց անելով վանդակի դռնակը, բռնեց փոքրիկի վզից ու դուրս քաշեց նրան։

Մայր կապիկը առանց ձայն հանելու, զարմացած նայում էր տիրոջը, բայց երբ հաստափորը նրա ձագուկը մեզ հանձնեց, մայր կապիկը այնպիսի մի ճիչ արձակեց, որ ես ամբողջ մարմնով փշաքաղվեցի։ Տիրոջ և գազանապահի կշտամբանքները չէին ազդում նրա վրա, նա թռչկոտում էր վանդակի չորս կողմը և ատամները մեզ ցույց տալով աղերսա[illegible]ից ճչում։

Մենք բավական հեռացել էինք գազանանոցից, բայց դեռ լսվում էր մայր կապիկի աղերսալի

Նորից սսուցել և աշխատել։

—Ոչ,—ասաց բժիշկ Ջեյմս Քերրոլը.— Եթե դուք հիվանդանաք և զոհվեք, ապա մեր սկսած գործը կիսատ կմնա։ Ավելի լավ է փորձը կատարենք ինձ վրա։ Միևնույն է այս վտանգավոր փորձի համար ավելի հարմար թեկնածու չեք գտնի։

Գիտական արշավախմբի մասնակիցները հուզվել էին Ջեյմս Քերրոլի նման մեծահոգությունից։ Սակայն Վալտեր Ռիդի համար շատ թանկ էր հայրենասեր բժշկի կյանքը. այդ պատճառով նա մերժեց, ասելով.

— Լավ, փորձերը կկատարենք կենդանիների վրա։

Անցան օրեր, մարդիկ աշխատում էին օր ու գիշեր. սակայն միայն կեն-



դանիների վրա ոչինչ չէր լինում ապացուցել։

Մի անգամ արշավախմբի ղեկավար Վալտեր Ռիդը կարևոր գործով բացակայեց։ «Քանի դեռ Ռիդը չի վերադարձել, փորձը կկատարեմ հենց ինձ վրա»— վճռեց Ջեյմս Քերրոլը։

Նա իր մաշկի վրա դրեց դեղին տենդով հիվանդից արյուն ծծած մոծակին։ Երեք օրից հետո բժիշկը հիվանդացավ։ Երբ հաստատվեց, որ ինքը վարակված է և մահվան դատապարտված՝ հերոսաբար գոչեց.

— Երջանիկ եմ. գաղտնիքը պարզված է։

Դեղին տենդը և հերոս բժիշկ Ջեյմս Քերրոլի օրգանիզմը մի քանի շաբաթ իրար դեմ կռվում էին։

Բայց տեղի ունեցավ այն, որին ոչ ոք չէր հավատում։ Ջեյմս Քերրոլը առողջացավ։ Մի քանի օր հետո նույն փորձը կատարեց արշավախմբի մասնակից բժիշկ Լեզիրը, որը մի քանի օրից հիվանդացավ և մահացավ։

Գիտությունը մի քայլ առաջ ընթացավ. պարզվեց, որ դեղին տենդը տարածում են մոծակները։

ծղոտացը։ Երկրորդ օրն էր, փոքրիկը ոչինչ չէր ուտում, երրորդ օրը խմեց մի քիչ կաթ, կերավ մանրի կրուպայով պատրաստած ճաշը և երկու կոնֆետ։ Չորրորդ օրը նա ինձ հետ սկսեց խաղալ։ Ես նրան իր մոր նման բութութ էի անում, և այդ նրան շատ էր դուր գալիս։

Այդ օրից անցել էր մեկ շաբաթ, սակայն ականջներիս մեջ դեռ հնչում էր մայր կապիկի աղերսալից ճիչը, և ես որոշեցի գնալ՝ տեսնել, թե ինչպես է իրեն զգում նրա մայրը։

Ներս մտնելով գազանանոցի դռնից, ես զգուշորեն մոտեցա մայր կապիկի վանդակին։ Առաջվա նման նրա վանդակի մոտ չկային հավաքված մարդիկ։ Նա աչքերը փակ, հանդարտ պառկած էր։



Ես տեսակ-տեսակ կոնֆետներ էի տարել նրան. դրանցից մի քանի հատ ձողերի արանքից ներս նետեցի։ Նա այդ ձայնից դանդաղորեն աչքերը բաց արեց և նայեց իմ կողմը, հետո մարդու պես մի քանի անգամ աչքերը բաց ու խուփ արեց և կանգնեց ոտքի։ Ես ուրախացա, մտածելով, որ կոնֆետներս նրան հրապուրեցին, հիմա կվերցնի և կուտի։ Ես մի տեսակ թեթևություն զգացի։ Բայց նա հանկարծակի նետվեց դեպի իմ կողմը և երկաթյա ձողերից բռնելով սկսեց թափահարել, ճչալ՝ աչքերը հառած ինձ վրա։ Նրա աղիողորմ ձայնը թափանցեց իմ հոգու խորքը, և իմ աչքերը ակամայից թրջվեցին։

Մարդիկ խուռն հավաքվեցին վանդակի մոտ։ «Երևի խենթացել է»— ասում էին այս ու այն կողմից։ Վեցերորդ օրն է ոչինչ չի կերել, իհարկե, կխենթանա,— ասում էր մեկ ուրիշը։

Մայր կապիկը ճչում էր, առանց մի վայրկյան շունչ առնելու։

Ես անմիջապես զգացի, որ նա ինձ ճանաչեց։ Իսկույն հետ քաշվեցի, որպեսզի նա հանգստանա։ Բայց երբ ես կորա նրա աչքից, նա սկսեց թռչկոտել վանդակի չորս կողմը, բարձրանալ ձողերի վրա, երևի ինձ տեսնելու նպատակով։

Հավաքվածները ծիծաղում էին կապիկի վրա, իսկ ես հազիվ էի պահում իմ արտասուքները, միայն ես գիտեի նրա տանջանքի պատճառը...

Դուրս եկա գազանանոցից, առանց մի բոպե կորցնելու, վազեցի տուն, վերցրի նրա փոքրիկին, և տեղավորելով պայուսակի մեջ, շտապ վերադարձա գազանանոց։ Առանց ուշադրություն դարձնելու դռնապանի վրա, ներս վազեցի։

Մայր կապիկը անհանգիստ շարժումներ անելով գնում-գալիս էր վանդակի մեջ։

Ես ձագուկին տվեցի գազանապահին և խնդրեցի շտապ հանձնել մորը։

Նա զարմացած ինձ նայեց և ակամայից կատարեց իմ խնդրանքը։

Վանդակում բացվեց մի սրտառուչ տեսարան։

Մայր ու որդի փաթաթված իրար, մնջատում էին։ Մայրը լիզում էր ձագի երեսը, աչքերը, իսկ ձագը ագահությամբ ծծում էր նրա կուրծքը։ Մայր կապիկը այլևս չէր ճչում, նա բութութ էր անում իր մանկանը, և նրա աչքերից մերթ ընդ մերթ գլորվում էին արցունքի կաթիլներ...



## ՁՄԵՌ ՊԱՊԻՆ

Ձմեռ պապին ձյունի հետ
Սպիտակին է տալիս.
Աչիկները լալիս են,
Երբ արև է դուրս գալիս.

Ինչքան օրը տաքանում,
Օդն է շնչում ջերմությամբ,
Ձմեռ պապին փոքրանում
Ու դառնում է բոռան չափ.

# Ամենալավ գույնը



ՇԱՀԵՆ ԽԱԹԻԿՅԱՆ

Վերջը չկարողացան, է՛լի, յոլա գնալ։ Յոլա գընալ, ինչպես ասում է պապիկը։ Հերթով ինչպե՞ս կարող էին ներկել իրենց նկարները։ Երբ Վազգենը ուզում էր կանաչով ներկել ծառերի տերևները, Սաթիկն իսկույն ցանկություն էր ունենում իր նկարած սարերի լանջերը կանաչ ներկելու, երբ Սաթիկը ուզում էր կարմիր ներկել մարգագետնի վրա նկարած ծաղիկներ՞, որ նրա կարծիքով պետք է կակաչներ լինեին, Վազգենն ուզում էր վարդեր նկարել և անպայման կարմիր վարդեր։

Եվ հա կռվեցին, հա քաշքշեցին միմյանց ձեռքից գունավոր մատիտները, մեկ-մեկ էլ մատիտները թողած՝ քաշքշեցին միմյանց մազերից։ Ասենք, այդ մեկը այնքան էլ ճիշտ չէ, քանի որ Վազգենի մազերը կարճ էին, բայց դե դրա փոխարեն, Սաթիկը նրա թևն էր կծմթում և օձիքից քաշքշում։

Այնպիսի աղմուկ էին բարձրացրել, որ կարծես ոչ թե երկու հոգի էին տան մեջ, այլ ամբողջ հարյուր երեխա և մեկը մյուսից ծղրտան ու ճչան։

Ա՛յ թե ինչպես էր բանը։

Բայց դե, մարդը ամեն բանից էլ վերջապես կարող է հոգնել։ Երկար կռվելն ու գզվռտելն էլ հոգնեցուցիչ է, և նրանք շուտով հոգնեցին։

Փնչացնելով, շնչակտուր նայեցին իրար, ասես մտածելով, թե էլ ինչպես կարելի է շարունակել իրենց այդ վեճը, վերջապես Սաթիկը, որ երևի ավելի էր հոգնել, առաջարկեց.

— Արի, մատիտները բոլորը բաժանենք։

— Արի բաժանենք,— իսկույն համաձայնվեց Վազգենը։

Բայց ինչպե՞ս բաժանեին։

Շատ մտածեցին, թե քիչ, ի վերջո, որոշեցին բաժանել, առանց գույնի խտրության։

Մի լավ խառնեցին մատիտներն ու սկսեցին բաժանել։

— Էս մեկը քեզ,— ասաց Սաթիկն ու Վազգենի կողմը քշեց պատահած մատիտը։— Էս մեկն էլ ինձ...

Այսպես, բաժանեցին, բաժանեցին, մի մատիտ ավելացավ։

Ա՛յ քեզ փորձանք։ Ու՞մ տան այդ ավելացածը։ Հակառակի նման էլ ավելացավ կանաչ գույնը։

— Կոտրենք,— առաջարկեց Վազգենը,— կոտրենք ու հավասար բաժանենք։

Բայց Սաթիկը չհամաձայնեց։

— Կկոտրենք, իսկ հետո մայրիկը կբարկանա մեզ վրա,— ասաց նա։

Հապա ի՞նչ անել։

Շատ մտածեցին, քիչ մտածեցին, հետո որոշեցին, որ այդ մատիտը չեն բաժանի, այլ կթողնեն մի կողմ։ Հետո հանդիսավոր խոսք տվեցին, որ ոչ մեկը ձեռք չի տա այդ մատիտին։

— Սա ոչ ոքի մատիտն է,— ասաց Սաթիկը։

Բաժանումն այդպես էլ վերջացավ։

* * *

Սենյակում քար լռություն էր, երբ մայրիկը շուկայից վերադարձավ։ Ա՛յ թե ուրախացավ։ Եվ ինչու՞ չպետք է ուրախանար։ Հո միշտ չի պատահում, որ իր պստլիկներն այսքան բարեխիղճ կատարեն։ Ո՛չ բակ են իջել ու տունը թողել առանց հսկողության, ո՛չ կռիվ են անում, ո՛չ էլ ամեն բան տակն ու վրա են արել, այլ սուս ու փուս նստած իրենց համար խելոք նկարում են։

Շատ ուրախացավ մայրիկը և մոտեցավ, երեխաների գլուխը շոյեց, բայց այդ պահին նրա հայացքը ընկավ նրանց նկարների վրա։

— Սա ի՞նչ բան է,— հարցրեց մայրիկը։

Նրա ձայնից երևում էր, որ նա շատ ու շատ է զարմացել։

Եվ ինչպե՞ս կարող էր չզարմանալ։

Սաթիկը այգի էր նկարել, ուր բոլոր տերևները կարմիր էին։ Վազգենը մարդ էր նկարել կապույտ մազերով։ Բայց այդ դեռ ի՞նչ էր որ։ Ի՞նչ զարմա-



նալի գույն ասես, որ չկար նրանց նկարներում. էլ շագանակագույն խնձորներ, ինչ—որ սև ծաղիկներ, կապույտ արև ու կարմիր խոտ... Մի խոսքով, մայրիկի բերանը բաց էր մնացել զարմանքից։

— Այս ի՞նչ գույներ են,— նորից հարցրեց նա,— ի՞նչ է, դուք չե՞ք տեսնում, թե ձեր շուրջը ո՛ր առարկան ինչ գույն ունի։

Վազգենը մոլորված լռեց, բայց Սաթիկը անմիջապես արագ-արագ վրա տվեց.

— Այդ ոչինչ, մայրիկ, բայց դու ասա խնդրեմ, ու՞մ գույներն են ավելի գեղեցիկ, ո՞ր գույնն է լավ, կարմի՞ր տերևը, թե կապույտ մազերը...

Մայրիկը մի քիչ էլի զարմացած նայեց, մի քիչ մտածեց ու կարծես թե ամեն ինչ հասկանալով, ասաց.

— Գիտե՞ք ինչ։ Ձեր նկարներում ոչ մի գույնն էլ լավը չէ, որովհետև ոչ մի գույնն էլ տեղին չի օգտագործված, իսկ այնպես, եթե հենց ուղղակի գույների մասին դատելու լինենք, ապա բոլոր գույներն էլ լավն են, եթե միայն տեղին են օգտագործված. կարմիր խոտը շատ վատ է, բայց կարմիր վարդը կամ խնձորը ո՞վ կարող է ասել, որ վատն են, կապույտ երկինքը գեղեցիկ է, բայց երբ արևն է կապույտ լինում, ո՞վ կարող է ասել, թե կապույտը լավ է։ Սև մազերը վատ չեն, սև աչքերն էլ, բայց երբ մարդ բնավորությամբ վատն է լինում, ապա ասում են, որ նա սև սիրտ ունի...

Վազգենն ու Սաթիկն այստեղ ամաչելով գլուխները կախեցին...



Նկ. ԼԱՎԻՆՅԱ ՄԵԼԻՔՅԱՆԻ

# Փաթիլն ու կաթիլը

ԳՈՒՐԳԵՆ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ



Փաթիլն ասաց.
— Ա՛յ կաթիլ,
Ինչացու՞ ես ինձ մոտ դու,
Ես թև ունեմ արծաթի,
Տե՛ս, թե ինչ եմ թռչկոտում:
Կաթիլն ասաց.
— Մի քիչ կաց,
Մի՛ պարծենա, ա՛յ փաթիլ,
Շուտով դու էլ կիջնես ցած
Ու կդառնաս մի կաթիլ:



# ԻՄ ՄԻԱԿ ԽԱՂԱԼԻՔԸ

*ԳՈՒՐԳԵՆ ՄԱՀԱՐԻ*

Ամեն անգամ, երբ նայում եմ խաղալիքների վաճառախանութների ցուցանակներին, ցուցափեղկերին, ամեն անգամ, երբ խաղալիքներ եմ գնում երեխայիս համար և տանը նայում եմ նրա խաղալիքների աճող հարստությանը, հիշում եմ իմ մանկական տարիների միակ խաղալիքը, որ վիճակվեց ինձ, միակ խաղալիքը, որ ես ունեցա իմ մանկական տարիներին։

Այդ խաղալիքը ես տեսա երկաթուղուց հարյուրավոր կիլոմետրերով հեռու մեր քաղաքի միակ գրախանութի ցուցափեղկում։ Դա ռեզինե մի գնդակ էր, կեսը վառ կարմիր, կեսը մուգ կապույտ, երազային մի խաղալիք, որը դարձավ իմ երազը։ Մեր դրացի Գառնիկը ուներ այդ գնդակից. ես հաճախ տեսնում էի, թե ինչպես նա խփում էր կախարդական գնդակը գետնին, և գնդակը բարձրանում էր վեր, ասես սրտիս հետ միասին։ Մի անգամ էլ գնդակը գլորվեց հեռու. ես հասա ու բռնեցի, խփեցի գետին և թեթև գնդակը թռավ վե՜ր, վե՜ր...

Հասավ Գառնիկը, վերցրեց գնդակը և անհետացավ։

Ամբողջ գիշերը երազում ես խաղացի Գառնիկի գնդակով։ Վազում էր Գառնիկը, խլում էր գնդակը և փախչում, հետո չգիտես ինչ հրաշքով, նորից գնդակը որտեղից-որտեղ հայտնվում էր իմ ձեռքում, ես խփում էի ճարպկությամբ գետնին, և գնդակը թռչում էր զարմանալի թեթևությամբ վե՜ր, վե՜ր։

Իսկ երբ ցերեկով երկար ժամանակ չէր երևում Գառնիկը, ես իմ քայլերն ուղղում էի դեպի գրախանութը։ Ես քայլում էի փողոցի կողքով, զգուշությամբ, որպեսզի չընկնեմ անցնող կառքերի տակ, անցնում էի Հակոբ աղի փուռը, հետո Հյուսյանենց երկու հարկանի գեղեցիկ տունը, որի բակում փոքրիկ ավազան կար, իսկ ավազանում՝ փոքրիկ ձկներ։ Ահա և հորաքույր Սաթենիկենց տունը, Երամյան վարժարանը և, վերջապես, գրախանութը։ Գնդակն իր տեղում էր, ցուցափեղկում. ես նայում էի կարոտով և տխրությամբ՝ այդ երազային առարկային և կոտրված սրտով վերադառնում տուն։

Եվ պատահեց այնպես, որ մի անգամ, երբ ես նույն այդ գրախանութի ցուցափեղկի առաջ կանգնած էի հմայված և ապշած, զգացի, որ ծանոթ ձեռքեր բռնեցին իմ ուսերը։

Մայրս էր։

— Դու ի՞նչ ես անում այստեղ, երթանք տուն։

— Գնդակը,— ասում եմ ես։

Ու մայրս գանգատվում է։

— Հորաքույր Սաթենիկենց տնից դուրս եկա, ուզում էի տուն գնալ, սիրտս վկայեց, ասի մի քիչ բարձրանամ, իսկ դու՝ այստեղ։ Գնանք տուն։

— Գնդակը,— ասում եմ ես։

— Գնդա՞կը,— հարցնում է մայրս զարմացած,— ի՞նչ գնդակ։

Պատասխանի փոխարեն ես աչքս հառում եմ գրախանութի ցուցափեղկին։

Մայրս հասկանում է ինձ։ Նա երկու ձեռքով ծնոտի տակ ամրացնում է սև շալը։

— Գնանք,— ասում է նա,— երբ հարստանանք, ես քեզ համար կգնեմ այդ գնդակը։

— Իսկ ե՞րբ կհարստանանք,— հարցնում եմ ես։

— Չգիտեմ,— պատասխանում է մայրս։

Մենք տուն ենք գնում հաշտված մեր ճակատագրի հետ, իսկ մայրս ասում է.

— Մի տարուց հետո դպրոց կգնաս։

— Գնդակը,— պնդում եմ ես։

— Երբ դպրոց գնաս, կմոռանաս գնդակը,— մխիթարում է ինձ մայրս։

Իսկ ես մտածում եմ, որ ինչ էլ պատահի ինձ հետ, միևնույն է, գնդակը շատ անհրաժեշտ է իմ կեցության և կացության համար։

— Գնդա՛կը,— նորից պնդում եմ ես։

Մյուս օրը, առավոտյան մայրս ասում է ինձ.

— Գնա բակը, խաղա, ես գնում եմ քեզ համար գնեմ մի բան։

«Մի բան»։ Պարզ է, որ այդ մի բանը գնդակը պիտի լինի։ Ես ուրիշ ոչ մի բան չեմ ցանկացել ունենալ։

և ես հանդիսավոր կերպով և թափով գնդակը խըփեցի գետնին։ Պատահեց մի զարմանալի բան. գնդակն ասես ցավից խուլ տնքաց, մի մատնաչափ թռավ վեր և ապա անշարժացավ։

Տիրեց քար լռություն։

Ես չկորցրի ինձ, կռացա, վերցրի գնդակը և գետին խփեցի ավելի մեծ թափով։

Գնդակը բարձրացավ մի մատնաչափ, գլորվեց և անշարժացավ։

Մինչև ես կորոշեի իմ անելիքը, Վարդանը, ապա Երվանդը փորձեցին իրենց ուժը։ Գնդակը ո՛չ մի կերպ չբարձրացավ։

Այդ միջոցին երևաց Գառնիկը։ Վստահ քայլերով նա մոտեցավ, բարձրացրեց գնդակը վարժ մատներով, սեղմեց, սեղմեց և հայտարարեց քիթը վեր քաշելով.



Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



Բակում ես, ի միջի այլոց, Վարդանին, Երվանդին, Ռուբենին և էլի մի քանի տղաների հաղորդեցի կարևոր մի բան. թշնամական հայացք նետելով դեպի Գառնիկենց երկհարկանի, շքեղ տունը։

Այդ մի բանը չուշացավ։

Տխուր դեմքով բակ մտավ մայրս և աչքերով ինձ որոնեց։ Ես վազեցի նրան ընդառաջ ամենաուրախ տրամադրությամբ։ Իմ ուրախությունն անտեղի չէր։ Նա պարզեց, որքան ինձ թվաց, դողացող ձեռքով, ռեզինե գնդակը, կեսը վառ կարմիր, կեսը մուգ կապույտ, երազային այն խաղալիքը, որ իմ երազն էր...

Էլ ինչու՞ տխուր է մայրիկը։

Մայրիկը հեռացավ, որքան ինձ թվաց, շվար ու անհաստատ քայլերով։ Նա չնկատեց անգամ իմ ուրախությունը։

Ինձ շրջապատեցին տղաները։ Օրվա հերոսը ես էի։ Տղաները հեռու քաշվեցին, լայնացնելով օղակը,

— Գնդակը ծակ է։ Խաբել են։

Ես հուզմունքից չկարողացա ինձ զսպել, մոտեցա, խլեցի նրա ձեռքից գնդակը և մի րոպեից հետո արտասվում էի դառն արցունքներով՝ մորս գրկում։

— Մայրիկ, քեզ խաբել են, գնդակը... գնդակը ծակ է, գնդակը չի բարձրանում վեր...

— Ինձ չեն խաբել,— արցունքների միջից ասաց մայրիկը,— ինձ չեն խաբել, ձագուկս, նոր գնդակի համար փողը չբավականացավ... ստիպված եղա էժան գնով վերցնել... Երբ մենք հարստանանք, ես քեզ համար նորը կգնեմ։

— Իսկ ե՞րբ կհարստանանք,— հարցրի ես։

— Չգիտեմ,— պատասխանեց մայրիկը, հետո մտածեց և ավելացրեց,— երևի... երբ դու մեծանաս...

Ահա ամբողջ պատմությունը։

... Ու հիմա, ամեն անգամ երբ նայում եմ խաղալիքների վաճառախանութների ցուցանակներին, ցուցափեղկերին, ամեն անգամ, երբ խաղալիքներ եմ գնում երեխայիս համար, տխրությամբ հիշում եմ իմ մանկական տարիների միակ խաղալիքը, միակ խաղալիքը, որ ես ունեցա իմ մանկական տարիներին։

# Խաղալիքներ



ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ

*Լիլիթն ու եղբայրը մենակ են տանը։ Տոնածառն էլ արդեն զարդարված, կանգնած է սենյակի մեջտեղը։ Եվ այնքան հրապուրիչ է այդ տոնածառը։ Շողշողուն խաղալիքները, փայլուն գնդիկները և ծիծաղելի գազանիկները կարծես կանչում են Լիլիթին ու եղբորը։ Այդ էլ նրանից է, որ Լիլիթն ու եղբայրը՝ վազվզում են սենյակում։ Իսկ երբ նրանք վազվզում են, փայլուն գնդիկները շարժվում են ու մեկ լուսավորվում, մեկ՝ ոչ. ասես թե աչքով են անում։ Հապա գույնզգույն լամպիկների շարա՞նը... Երբ հայրիկը երե՛կ մթան մեջ վառեց, գեղեցիկ մի հեքիաթ դարձավ տունը։ Գարնան ծաղիկներ էին ասես, որ միանգամից բացվեցին ծառի վրա։ Իսկ ծառի կատարի կարմիր աստղը... Օ՜... ի՜նչ գեղեցիկ է նա...*

*Աչքով են անում խաղալիքները, գլխով են անում գազանիկները, կատարն ու թաթերն է շարժում կանաչ ծառը... Կանչում են նրանք, կանչում են երեխաներին։*

*Մայրիկն ու տատիկը չեն թողնում, որ Լիլիթն ու Տոպիկը ձեռք տան գնդիկներին ու խաղալիքներին, որովհետև նրանք կընկնեն ու կկոտրվեն։ Լամպիկներն էլ չի կարելի վառել. էլեկտրական հոսանքը կարող է խփել և...*

*Հանկարծ երեխաները դադարեցին վազվզել, կանգ առան լարի ծայրին միացված եղանիկի առաջ, որ ասես դեղին պոզերով մի խխունջ է. լարն էլ ասես կարմիր ու բարակ օձի նման։*

*Լիլիթը աչքերը չռած նայեց եղբորը, եղբայրն էլ նրան։ Հետո քույրը աչքը գցեց կարմիր օձուկի սև գլխին, եղբայրն էլ։ Հետո էլի իրար նայեցին, ձեռք-ձեռքի տվեցին ու մի քայլ արեցին, որ անցնեն օձի վրայով... Է՜, ի՞նչ օձ, ինչ բան. լամպիկների շարանի պոչն է դա, ու պոչի ծայրին՝ փունջ։*

*Երեխաները հիշեցին, որ մեծերն առանց վախենալու խխունջի պոզերը մտցնում են պատի վրայի սև բնիկների մեջ ու լամպիկներն անմիջապես վառվում են...*

*— Տոպիկ, արի միացնենք, հա՞,— շշուկով ասաց Լիլիթը։*

*— Չի կարելի,— պատասխանեց եղբայրը։*

*— Ի՞նչ կլինի որ։*

*— Կկծի։*

*— Է՜... օձ հո չի՞, որ կծի... հա՜-հա՜-հա՜...— ծիծաղեց Լիլիթը։*

*— Հոսանքը... կխփի...— վախեցած ասաց եղբայրը։*

*— Մենք էլ շատ կամաց կմիացնենք։*

*— Չէ՛։*

*— Վախկո՛տ, վախկո՛տ... իբր թե տղա ես։*

*Դուք արդեն գիտեք, որ Լիլիթն իր եղբորը Տոպիկ է ասում և ոչ թե Ստեփան։ Թող Տոպիկ լինի... Ա՛յ, այդ Տոպիկը ձայն չհանեց. միայն մի երկու անգամ նայեց քրոջը, կիսախխունջ-կիսաօ-*



ձուկի գլխին, պատի սև խրոցին ու բերանը բաց արեց։

— Հը, միացնե՞նք... բան չի լինի,— պնդեց Լիլիթը։

Տոպիկը ժպտաց։

— Արի... բայց զգույշ, հա՞։

— Հա,— կամաց-կամաց։

Երեխաները մոռացել էին, որ այդ կարմիր լարը լամպիկների պոչին միացված չէր։

Եվ ահա, Լիլիթը առջևից, իսկ Տոպիկը հետևից, տոտի-տոտի մոտեցան օձուկի գլխին։

— Դու միացրու,— ասաց Լիլիթը։

— Չէ՛,— կտրուկ մերժեց Տոպիկը։

Լիլիթը քիթ ու բերանը ծամռեց, արհամարհանքով նայեց եղբորը, աչքերը փակեց ու հատակից վերցնելով խրոցը, գնաց դեպի պատը։

Եղբոր ձեռքը բաց չէր թողնում, իսկ Տոպիկը քարշ էր գալիս նրա հետևից։ Պատին մոտեցան թե չէ, Լիլիթն աչքերը բաց արեց և եղանիկը կամացուկ մոտեցրեց խրոցին։

— Ի՞նչ ես վախենում, միացրու, էլի՛,— ասաց եղբայրը։

— Քեզ պես վախկոտ չեմ, ը՛հը,— բացականչեց Լիլիթն ու եղանիկը մտցրեց խրոցի բնիկները։

Ոչ մի բան էլ չեղավ։ Կարմիր լարը հանգիստ պառկած էր հատակին։ Երեխաները սիրտ առան։ Լիլիթը նույնիսկ սկսեց պարել՝ տրա-լա-լա, տրա-լա-լա... Մոտեցան ծառին։ Այս անգամ եղբայրն էր առաջինը։ Անմիջապես ձեռքն առավ օձուկի պոչը, հասավ ծառին ու մոտեցրեց լարի այն տեղին, որտեղին որ հայրիկն էր միացնում։

Հանկարծ օձուկի պոչը կայծեր արձակեց, ճռթ-ճռթաց, դողդողաց ու Տոպիկի ձեռքից ընկավ։

— Վա՜յ, մամա ջան,— ճչաց Լիլիթը։

Եղբայրը նստեց հատակին և աչքերն ու բերանը լայն բացած նայում էր լարին։ Միջանցքի լույսն էլ հանգավ.

— Մամա ջա՜ն,— սկսեց լաց լինել Լիլիթն ու ու թուլացած նստեց եղբոր կողքին։

— Ու՜... ու՜...— արձագանքեց եղբայրը.— բա՜... բա՜... բա որ ասում էի... ու՜... չի կարելի՜... ո՜ւ...

Ախր, նրանք փոքրիկ էին։ Լիլիթը չորս տարեկան էր, իսկ եղբայրը՝ վեց...

Շատ լացեցին նրանք, թե քիչ, ո՞վ գիտի...

Լավ էր, որ հայրիկն ու մայրիկը այնքան էլ չուշացան։ Դեռ սանդուղքի գլխին լսեցին, որ երեխաները միաձայն լաց են լինում։ Իսկույն բաց արեցին դուռը, ներս ընկան ու հենց այդպես, վերարկույով, գլխարկով և, նույնիսկ, կրկնակոշիկները ոտներին, շտապեցին երեխաների մոտ...

Մնացածը պարզ է, չէ՞։ Դրանից հետո երեխաները ոչ էլեկտրական արդուկի ու սալիկի էին ձեռք տալիս, ոչ էլ լուցկի էին վառում առանց թույլատվության։

Վախեցան, բայց խրատվեցին։



Նկ. ՄԱՍԻՍ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# ԲՈՒՄԻ



ՅՈՀԱՆՆԱ ՔՌՅԳԵՐ

«Բոնբոն տեսնեմ՝ մի ամիս
Կբռնի ցավն ատամիս...

Ծննդյան տոն արեցին,
Քաղցրավենիք շարեցին:

Ես էլ կերա, ի՛նչ տեսա:
Զասին. «Քիչ կեր, վատն է սա...»

Բայց արջն այնքան է տրտում,
Աչքի՛ց արցունք է կաթում:

— Այս ցավն երկար կգնա.
Կանչիր հրշեջ մեքենա:



Բումին ցավից գունատվում,
Լալիս էր ու գանգատվում:

Տիկնիկն ուզեց անպատճառ
Նրա ցավին անել ճար:

Գնաց օրոր ու շորոր,
Բերեց ինչ-որ գլխաշոր:



— Զընգ, վընգ, — ավտոն հասցրին,
— Հրդեհն ու՞ր է, — հարցրին:

— Խորքումն է իմ բերանի...
Ջուր ցողեիք երանի:

— Հայա՜... ծա՛կ է ատամդ.
Թող գա բժիշկ Ադամը:

Ցավից չեկած դեռ ուշքի,
Բումին գնաց բժշկի:

Փափլիկ թաթից պինդ բռնած՝
Հետը տիկնիկն էլ գնաց:

— Բժիշկն այսօր կընդունի՞,
Սպասելը միտք ունի՞:

— Այո՛, այո՛, անպայման, —
Ասաց քույրը գթության:

Բումի, մոտ եկ, մտի՛ր ներս.
Որ այդ ցավից շուտ պրծնես:

Բժիշկն արջին ներս թողեց,
Բերանն իսկույն ողողեց:

Հետո քեռի Ադամը
Շարժեց հիվանդ ատամը:

Տեսավ՝ ուշ է, չի բուժվի.
Խեղճ արջուկը կտուժի:

Քաշեց... Բումին դիմացավ.
Կարծես չզգաց ոչ մի ցավ:

Ասին. «Ապրե՛ս, քաջն ես դու»:
Նվիրեցին նախշած ձու:

*Գերմաներենից փոխադրեց*
*ՊԱՐՈՒՅՐ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*







# ՆԱՊԱՍՏԱԿՆԵՐԻ ՆՈՐ ՏԱՐԻՆ

ԳԵՎՈՐԳ ԱԼԱԳՅՈԶՅԱՆ









Նկ. ԱԴԱ ՎԱՐԴԱՆՅԱՆԻ

Մի օր, անտառում, Նապաստակները զարդարել էին եղևնին ու դիմավորում էին Նոր տարին: Այդ պահին, որտեղից-որտեղ, հայտնվեց քաղցած գայլը: Նապաստակները վախեցած, սառած գետի վրայով ցատկոտեցին տուն: Գայլը նույնպես փորձեց անցնել գետը, բայց սառույցը բարակ էր ու ոտքի տակ ճաքճքեց

Ի՞նչ անել... մտածեց քաղցած գայլն ու թաքնըվեց ցցին հենած քթոցի մեջ՝ մինչև որ շլդիկները նորից երևան:

Ի՞նչ անեն... մտածեց հայրիկ-Նապաստակը, որ ազատվեն չար գայլից, ու... հնարը գտավ: Նա պարանը օղ արեց ու նետեց մյուս ափը:

Օղակը ընկավ ցցի վրա: Հայրիկը, մայրիկը, ձագուկները ամուր բռնեցին այն ու թափով քաշեցին:

Ցիցը պոկվեց, սառույցը կոտրվեց և գայլը քթոցով գլորվեց գետի հատակը:

Փրկված Նապաստակները ուրախ վազեցին՝ տոնածառի շուրջը շարունակելու իրենց Նոր տարվա ուրախությունը:

## ԹԵ ԻՆՉՈՒ ՁՆԵ ՄԱՐԴԸ ՓԼՎԵՑ








## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ*

## ԿԱՐՈ՞Ղ ԵՔ ԳՏՆԵԼ...



*Գագիկը, Արմենն ու Գեղամը ձմեռային մի օր դահուկներով դուրս եկան արշավի։ Անտառի մի փոքրիկ բացատով անցնելիս, նրանք լսեցին խշրտոց, ապա ճյուղերի արանքում նկատեցին մի սկյուռ, որն շտապում էր թաքնվել։ Տղաները, որպեսզի տեսնեն, թե սկյուռը վերջնականապես որտեղ է պատսպարվելու, պահվեցին։*

*Բայց թաքնվելու պահին նրանք տեսողությունից կորցրին սկյուռին, և հիմա, փնտրում են հայացքով ու չեն գտնում։*

*Իսկ դուք կարո՞ղ եք գտնել սկյուռին և հայտնել նրա տեղը տղաներին, որոնք թաքնվելու վարպետությամբ չեն զիջում սկյուռին։*


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Տ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41

Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։

ՎՖ 01419. Պատվեր 1856; Տպաքանակ՝ 9500։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 16/I 1961 թ.։ ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան 91։

Գինը 20 կ.։

# Ֆոկուսներ



*Հայկ. ՍՍՌ վաստ. արտիստ*
*ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀԱԿՈԲՅԱՆ*

## ԳՆԴԻԿՆԵՐ... ԲԵՐԱՆԻՑ

Այս ֆոկուսի համար պետք է ունենալ մի հատ կիսված և երկու ամբողջական պինգ-պոնգի գնդիկներ։

Կիսված գնդիկը հագցնել մյուս գնդիկներից մեկին և այն նախապես դնել բերանում, իսկ մյուս գնդիկը՝ ձախ գրպանում։ Բեմ դուրս գալիս ձախ գրպանի գնդիկը հանել և ցույց տալ հանդիսատեսին։ Ապա ձախ ձեռքով դնել այն գլխի վրա և սեղմել աջ ձեռքով, թեթև չխկացնելով։ Նույն պահին բաց անել բերանը և լեզվով առաջ հրել բերանում պահված գնդիկը։ Այդ գնդիկը, որը իբրև թե խրվել էր գըլխում, իրոք պահված է ափում։ Երբ երկրորդ գնդիկը երևա բերանում, մոտեցնել աջ ափը, որի մեջ գնդիկն է պահված։ Բերանում պահված գնդիկը ետ քաշել նորից, իսկ այն, որ ափում է, ցույց տալ հանդիսականներին և դնել գրպանում։ Ապա նորից լեզվով առաջ հրել գնդիկը։

Այս անգամ վերցնել այն, թողնելով բերանում միայն կես գնդիկը։

Ապա գնդիկով ձեռքը մտցնել գրպանը, պատրանք ստեղծելով, որ իբրև թե այդտեղ է դրվում գնդիկը։ Բայց այն առաջվա պես ձեռքում է պահվում և մի քանի անգամ կըրկընվում է նույն գործողությունը։

Հանդիսատեսներին թվում է, թե բերանից հանվում են անթիվ գնդիկներ։

Հինգ-վեց անգամ այդ անելուց հետո, գնդիկը իսկապես դնել գրպանը։ Վերջում բերանից հանել կիսված գնդիկը, դրանով ավարտելով ֆոկուսը։

## ԿԵՐՊԱՐԱՆԱՓՈԽՎԱԾ ՋՈՒՐԸ

Այս ֆոկուսի համար պետք է ունենալ մի գավաթ՝ իր ափսեով, որոնք պետք է նախապես դրված լինեն սեղանին։ Ֆոկուսնիկը ջրամանից մի քիչ ջուր է լցնում գավաթի մեջ։ Ջրամանը դնելով տեղում, նա վերցնում է բաժակը և ջուրը շպրտում հանդիսականների վրա։ Առաջին շարքերից ճչում են, մինչդեռ ջրի փոխարեն նրանց վրա թափվում են գույնըզգույն կոնֆետներ։

Գաղտնիքը գավաթի և ափսեի մեջ է։ Գավաթի ներսում ուղղահայաց դիրքով դրված է մի բարակ մետաղե թիթեղ, որը բաժանում է այն երկու հավասար մասերի։ Դրանցից մեկում նախապես լցված են կոնֆետներ, մյուսի մեջ ջուր է լցվում։ Պետք է ընտրել խորը ափսե և դնել պլաստմասսայից կամ մետաղից երկրորդ հատակ՝ անցքով։ Գավաթի այն կեսը, որ լցվում է ջրով, նույնպես անցք պետք է ունենա։ Գավաթը ափսեի վրա պետք է դնել այնպես, որ անցքերը համընկնեն։ Ջուրը, որ լցվում է գավաթը, երկրորդ հատակից անցնում է ափսեի մեջ։

Գավաթը բաժանող թիթեղը և ափսեի երկրորդ հատակը պետք է ներկված լինեն գավաթի գույնի և կիպ նստեն պատերի մեջ։

## ՍԻՐԵԼԻ ԵՐԵԽԱՆԵՐ

Նկարիչ Դանիել Սարգսյանը, այս վեց շրջանակներում նկարել է մի քանի կենդանիներ և թռչուններ։ Ուշադրությամբ նայեցեք և գտեք նկարչի կատարած սխալները։



20 կ.

# ԿԱՉԱՂԱԿԻ ԴԱՍԸ

ԱՐՇԱՎԻՐ ԴԱՐԲՆԻ

Կաչաղակը
Ոստոստում էր ու չըրթչըրթում,
Ձագուկներին դաս էր տալիս,
Իբր կրթում:

— Չը՛րթ-չը՛րթ, չը՛րթ-չը՛րթ,
Դուք միշտ եղեք համեստ ու հեզ,
Չը՛րթ-չը՛րթ, չը՛րթ-չը՛րթ,
Որ ամենքը հավանեն ձեզ:

Քիչ խոսեցեք՝ ձեր մոր նման,
Թող ձեր ձայնին կարոտ մնան...
— Չը՛րթ-չը՛րթ, չը՛րթ-չը՛րթ,
Ձագուկներն են զիլ աղմկում:

Դրկիցները ձանձրանում են,
Ականջները ամուր փակում,
Կաչաղակը ժպտում է գոհ.
— Չը՛րթ-չը՛րթ, չը՛րթ-չը՛րթ, լա՛վ է, լա՛վ է,
Մի բաց ունեք՝
Քչախոս եք չափից ավել:
Բերաններդ ազատ բացեք,
Ամբողջ ձայնով չըրթչըրթացեք...
Թե չէ, գիտեմ,
Կըբամբասեն
Ու ձեր մասին
Ծածուկ կասեն.
«Ձագուկները
Քիչ կակազ են...»

Նկ. ՍԵՅՐԱՆ ԽԱՐԼԱՄԱՋՅԱՆԻ